# «Կորիոլան»

# “Coriolanus”

Ուիլյամ Շեքսպիրի

[1608]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի [1978]*

“You common cry of curs! whose breath I hate
As reek o' the rotten fens, whose loves I prize
As the dead carcasses of unburied men
That do corrupt my air, I banish you ...”

## DRAMATIS PERSONÆ

CAIUS MARCIUS CORIOLANUS, a noble Roman
TITUS LARTIUS, General against the Volscians
COMINIUS, General against the Volscians
MENENIUS AGRIPPA, Friend to Coriolanus
SICINIUS VELUTUS, Tribune of the People
JUNIUS BRUTUS, Tribune of the People
YOUNG MARCIUS, son to Coriolanus
A ROMAN HERALD
TULLUS AUFIDIUS, General of the Volscians
LIEUTENANT, to Aufidius
Conspirators with Aufidius
A CITIZEN of Antium
TWO VOLSCIAN GUARDS
VOLUMNIA, Mother to Coriolanus
VIRGILIA, Wife to Coriolanus
VALERIA, Friend to Virgilia
MAID, attending on Virgilia
Roman and Volscian Senators, Patricians, Aediles, Lictors, Soldiers, Citizens, Messengers, Servants to Aufidius, and other Attendants

ACT I. SCENE I.

Rome. Street. Company of Mutinous Citizens enter with staves, clubs, and other weapons.

CITIZEN I.

Կանգնենք։ Եւ առաջ ականջ դրէք ինձ։

EVERYONE.

Խօսի՛ր, խօսի՛ր։

CITIZEN I.

Չէ՞ որ ամէնքդ էլ վճռել էք մեռնել, քան սովից տանջուել։

EVERYONE.

Վճռել ենք, վճռել։

CITIZEN I.

Նախ եւ առաջ գիտէք, որ կայիոս մարցիոս ժողովրդի մեծ թշնամին է։

EVERYONE.

Գիտենք, գիտենք։

CITIZEN I.

Գնանք նրան սպանենք, յետոյ ցորենը մեր ուզած գնով կարող ենք գնել. վճռուած բան է. էլ խօսել պէտք չէ։ Գործադրենք. գնանք, գնանք։

CITIZEN II.

Մէկ բառ, բարի քաղաքացիք։

CITIZEN I.

Մեզ համարում են խեղճ քաղաքացիք, պատրիկեաններին են ասում բարի

քաղաքացիք։ Ինչ որ իշխանաւորների համար հափրանք է, մեզ կը փրկէր սովից։ Եթէ նրանք իրենց աւելորդը, քանի դեռ չէ փտած, մեզ շնորհէին, կարող էինք մտածել, թէ ուզում են մարդասիրաբար օգնել մեզ. բայց էդ մարդիկ մտածում են, թէ մենք նրանց վրայ շատ թանկ ենք նստում. էս նիհարութիւնը, որից տանջւում ենք, մեր թշուառութեան տեսարանը կարիքների մի ցանկ է նրանց փարթամութիւնը ցայտեցնելու։ Մեր տառապանքը նրանց համար շահ է։ Գնանք ցիցերով մեր վրէժը հանենք, նախքան թէ ինքներս ցիցերի պէս բարակենք։ Աստուածները գիտեն, որ ես խօսում եմ հացի քաղցից, ոչ թէ վրէժի ծարաւից։

CITIZEN II.
Եւ կ՝ուզէիր հէնց ճիշտ կայիոս մարցիոսի՞ն պատժել։

EVERYONE.
Ամէնից առաջ նրան. նա շան պէս է վարւում հասարակ ժողովրդի հետ։

CITIZEN II.
Բայց չէք ուզում աչքի առաջ բերել այն ծառայութիւնները, որ նա արել է իր հայրենիքին։

CITIZEN I.
Շատ լաւ, եւ շատ ուրախութեամբ նրան կը գնահատէինք, բայց նա իր գոռոզութիւնով ինքն իրան վարձատրում է։

CITIZEN II.
Դէ լաւ, այդչափ քինոտ մի՛ խօսիր։

CITIZEN I.
Ասում եմ քեզ, ինչ երեւելի բան որ արել է, իր փառքի համար է արել. փափկախիղճ մարդիկ կարող են այնքան բարի լինել, որ ասեն, թէ իր հայրենիքի համար է արել. բայց ո՛չ, նա արել է միայն իր մօրը հաճելի լինելու համար եւ մասամբ էլ իր արածով հպարտանալու համար. նրա գոռոզութիւնը ոչնչով պակաս չէ նրա

արժանիքից։

CITIZEN II.
Այն, որ նա չէ կարող փոխել իր բնութեան մէջ, դու մոլութիւն ես համարում։ Ոչ մի կերպով չես կարող ասել, թէ նա ագահ մարդ է։

CITIZEN I.
Եթէ այդ մէկը չեմ կարող ասել, շատ ուրիշ բաներ կարող եմ. յանցանքներ շատ ունի, այնքան շատ, որ հաշուողը կը հոգնի։ (աղաղակ դրսից։) Էս ի՞նչ ձայներ են։ Քաղաքի միւս թաղը ապստամբել է. ինչո՞ւ ենք կանգնել այստեղ եւ դատարկ դուրս տալիս։ Գնանք կապիտոլ։

EVERYONE.
Գնանք, գնանք։

CITIZEN I.
Կեցէք, էս ո՞վ է գալիս։

[Menenios Agrippa enters.]

CITIZEN II.
Յարգելի մենենիոս ագրիպպան է, մի մարդ, որ միշտ ժողովրդի բարեկամն է եղել։

CITIZEN I.
Բաւական պարկեշտ մարդ է. երանի թէ բոլոր միւսներն էլ նրա նման լինէին։

MENENIUS.
Այդ ի՞նչ բանի էք, հայրենակիցնե՛ր. այդ ո՞ւր էք գնում գաւազաններով եւ մահակներով. նիւթը՞, խնդրում եմ։

CITIZEN I.
Մեր գործն անծանօթ չէ սենատին. այս վերջին երկու շաբաթուայ մէջ սենատորները քիչ թէ շատ լսած կը լինեն, թէ ի՛նչ ենք մտադիր անել, եւ հիմա ուզում ենք գործով ցոյց տալ։ Ասում են՝ աղքատ խնդրարկուները ուժեղ ձայներ ունին. պէտք է իմանան, որ ուժեղ բազուկներ էլ ունինք։

MENENIUS.
Բարի վարպետներ, լաւ բարեկամներ, պարկեշտ դրացիք, ինչո՞ւ էք ուզում ձեր տունը քանդել։

CITIZEN I.[1]
Չենք կարող քանդել. քանդուած է արդէն։

MENENIUS.
Բայց ասում եմ ձեզ, իմ բարեկամներ, պատրիկեանները շատ բարի սրտով ձեր հոգսն են քաշում, ձեր կարիքների եւ սովից կրած զրկանքի համար։ Նոյնքան կարող էք երկնքին զարկել ձեր մահակներով. որքան բարձրացնել այդ մահակները ձեր պետութեան դէմ, եւ հռոմի կառքը կ՝անցնի կը գնայ իր բռնած ճամփով՝ պատառոտելով տասն հազար շղթայ, աւելի ամուր, քան թէ ձեր բոլոր խոչընդոտները։ Գալով այս սովին՝ մեծ աստուածներն են հեղինակները, ոչ թէ սենատը. եւ ձեր ծնկները՛ պէտք է օգնեն ձեզ, ո՛չ բազուկները, այս աղէտը ձեզ տանում է մի տեղ, ուր աւելի մեծ աղէտ է սպասում։ Դուք զրպարտում էք պետութեան բարի ղեկավարներին, որոնք՝ իբրեւ հայր, ձեր հոգսն են քաշում, այնինչ դուք նրանց անէծք էք կարդում իբրեւ թշնամու։

CITIZEN I.
Մեր հոգսն են քաշում, այո՛, իսկապէ՛ս. երբեք չի եղել, որ մտածեն մեր մասին. թողնում են, որ սովից մեռնենք, երբ իրենց ամբարները ցորենից տրաքւում են. հրովարտակներ են հանում վաշխառութեան մասին՝ վաշխառուներին պաշտպանելու համար. ամէն օր վերացնում են ամէն օգտաւէտ օրէնք, որ

1 «Աչքերը հոգու պատուհանները չեն: աչքերը դռներն են: զգուշացեք, թե ինչ կարող է հայտնվել այնտեղ»:

հաստատուած է եղել հարուստների դէմ, եւ ամէն օր աւելի կեղեքիչ օրէնքներ են հաստատում՝ աղքատին կաշկանդելու եւ զսպելու համար։ Եթէ պատերազմը չուտէ մեզ, իրե՛նք կ՝ուտեն. ահա այն սէրը, որ նրանք ունին դէպի մեզ։

MENENIUS.
Կա՛մ խոստովանիր, որ զարմանալի չարամիտ մարդ ես, եւ կամ պէտք է քեզ խելագար կոչենք։ Մի սիրուն առակ պիտի պատմեմ ձեզ. գուցէ լսել էք. բայց քանի որ նա յարմար է գալիս իմ ասելիքին, ես էլ թող կրկնեմ, հոգ չէ, թէ մի քիչ անհամ կը դառնայ։

CITIZEN I.
Դէ լա՛ւ, կը լսեմ, պարոն. բայց չպիտի կարծէք, թէ կարող էք առակներով մեր գլխին իւղ քսել։ Հիմա, եթէ կը բարեհաճէք, պատմեցէք։

MENENIUS.
Մի անգամ մարմնի բոլոր անդամներն ապստամբում են որովայնի դէմ, եւ նրան այսպէս ամբաստանում են, թէ նա նստել է մի վիհի նման մարմնի կենտրոնում եւ ծոյլ ու անգործ ներս է կլանում կերակուրները՝ պատառոտելով տասն հազար շղթայ, աւելի ամուր, քան թէ ձեր բոլոր խոչընդոտները։ Գալով այս սովին՝ մեծ աստուածներն են հեղինակները, ոչ թէ սենատը. եւ ձեր ծնկները՛ պէտք է օգնեն ձեզ, ո՛չ բազուկները, այս աղէտը ձեզ տանում է մի տեղ, ուր աւելի մեծ աղէտ է սպասում։ Դուք զրպարտում էք պետութեան բարի ղեկավարներին, որոնք՝ իբրեւ հայր, ձեր հոգսն են քաշում, այնինչ դուք նրանց անէծք էք կարդում իբրեւ թշնամու։

CITIZEN I.
Մեր հոգսն են քաշում, այո՛, իսկապէ՛ս. երբեք չի եղել, որ մտածեն մեր մասին. թողնում են, որ սովից մեռնենք, երբ իրենց ամբարները ցորենից տրաքւում են. հրովարտակներ են հանում վաշխառութեան մասին՝ վաշխառուներին պաշտպանելու համար. ամէն օր վերացնում են ամէն օգտաւէտ օրէնք, որ հաստատուած է եղել հարուստների դէմ, եւ ամէն օր աւելի կեղեքիչ օրէնքներ են

հաստատում՝ աղքատին կաշկանդելու եւ զսպելու համար։ Եթէ պատերազմը չուտէ մեզ, իրե՛նք կ՚ուտեն. ահա այն սէրը, որ նրանք ունին դէպի մեզ։

MENENIUS.
Կա՛մ խոստովանիր, որ զարմանալի չարամիտ մարդ ես, եւ կամ պէտք է քեզ խելագար կոչենք։ Մի սիրուն առակ պիտի պատմեմ ձեզ. գուցէ լսել էք. բայց քանի որ նա յարմար է գալիս իմ ասելիքին, ես էլ թող կրկնեմ, հոգ չէ, թէ մի քիչ անհամ կը դառնայ։

CITIZEN I.
Դէ լա՛ւ, կը լսեմ, պարոն. բայց չպիտի կարծէք, թէ կարող էք առակներով մեր գլխին իւղ քսել։ Հիմա, եթէ կը բարեհաճէք, պատմեցէք։

MENENIUS.
Մի անգամ մարմնի բոլոր անդամներն ապստամբում են որովայնի դէմ, եւ նրան այսպէս ամբաստանում են, թէ նա նստել է մի վիհի նման մարմնի կենտրոնում եւ ծոյլ ու անգործ ներս է կլանում կերակուրները՝ առանց այլոց պէս գործ կատարելու, իսկ բոլոր ուրիշ գործարանները տեսնում են, լսում, մտածում, քայլում, հրահանգում, զգում եւ գործակցում են փոխադարձաբար՝ միշտ ծառայելով ընդհանուր մարմնի ցանկութիւններին եւ ախորժակին։ Եւ փորը նրանց պատասխան տուաւ։

CITIZEN I.
Հա, փորն ի՞նչ ասեց։

MENENIUS.
Կ՚ասեմ քեզ, պարոն։ Նա քմծիծաղով, ոչ թէ թոքերից բխած ծիծաղով, այլ միայն այսպէս։ Տեսէք, կարող եմ փորին ժպտել տալ, ինչպէս եւ խօսել. այսպէս հեգնօրէն պատասխան տուաւ այն դժգոհներին, այսինքն՝ մարմնի ըմբոստ մասերին, որոնք նրա վրայ նախանձում էին, իսկ եւ իսկ ձեզ պէս, որ բամբասում էք սենատորներին, թէ ձեզ նման չեն։

CITIZEN I.
Դու ասա, թէ փորն ի՛նչ պատասխանեց։

MENENIUS.
Արքայանման թագադիր գլուխը, մշտարթուն աչքը, խոհական սիրտը, ռազմիկ բազուկը, նժոյգ սրունքը, փողահար լեզուն, մեր այս շինուածքի միւս գործիքների եւ անկարեւոր պսպօրների հետ, եթէ որ նրանք։

CITIZEN I.
Յետո՞յ. տէ՜ր աստուած, այսքա՜ն շաղակրատ. յետո՞յ, յետոյ ի՞նչ։

MENENIUS.
Հարստահարուի՞ն անկշտում փորից, որ մարմնի միայն ջրի ճամփան է։

CITIZEN I.
Շատ լաւ, յետոյ ի՞նչ։

MENENIUS.
Միւս գործիչները երբ գանգատ արին, փորն ի՞նչ պատասխան կարող էր ասել։ Քո սակաւ համբերութիւնից մի քիչ գործածես, կ՝ասեմ քեզ հիմա, ապա կ՝իմանաս, թէ փորն ինչ ասեց։

CITIZEN I.
Շատ ես ձիգ տալիս։

MENENIUS.
Լաւ ուշ դիր, ընկեր։ Ձեր խիստ լուրջ փորը խոր մտածող էր, ոչ դիւրաբորբոք, ինչպէս իր ընդդէմ բարբառողները. նա այսպէս խօսեց։ «Շատ ճշմարիտ է, իմ մարմնակիցներ, ես եմ ստանում ամէնքից առաջ ընդհանուր սնունդը, որով ապրում էք. այդպէս էլ պէտք է. քանի որ ես եմ մարմնի խանութը, շտեմարանը.

բայց մի՛ մոռանաք, որ այդ բոլորը հետ եմ ուղարկում ձեր արեան տարբեր գետերի միջով, մինչեւ արքունիքն, այսինքն՝ սիրտը, մինչեւ ուղեղի բնակավայրը, եւ մարմնի բոլոր խողովակներով եւ բաւիղներով ուժեղ ջիղերը եւ ստորադաս փոքրիկ նեարդերը ինձնից են առնում իրենց բնական օրապահիկը, որով ապրում են, եւ դուք, թէպէտեւ ամէնքդ մէկեն, բարի ընկերներ, ասում է փորը. լաւ ուշ դարձրէք։

CITIZEN I.
Լաւ է, լաւ, պարոն։

MENENIUS.
*«Եւ դուք, թէպէտեւ ամէնքդ մէկեն չէք կարող տեսնել, թէ ի՛նչ եմ տալիս իւրաքանչիւրիդ, բայց ես կարող եմ ձեզ լաւ հաշիւ տալ, որ ամէնքդ ինձնից հետ էք ստանում զտուած ալիւրը, եւ թեփն էք թողնում»։* Սրան ի՞նչ կ՝ասէք։

CITIZEN I.
Լաւ պատասխան էր. բայց մեր գործի հետ դա ի՞նչ կապ ունի։

MENENIUS.
Ահա ինչ. հռոմի սենատորներն են այն բարի փորը, եւ դուք՝ ապստամբ մարմնակիցները. հիմա միտ բերէք նրանց խորհուրդներն ու խնամքները, լաւ ըմբռնեցէք հասարակութեան բարօրութիւնը, եւ դուք կը տեսնէք, որ մի հանրօգուտ բարիք չէ եղել, որ ձեզ նրանցից հասած չլինի, այլ ձեզնից ծագած։ Ի՞նչ է կարծիքդ, խօսիր, ոտքի բութն այս հաւաքոյթի։

CITIZEN I.
Ես ոտքի բո՞ւթ եմ. ինչո՞ւ ոտքի բութ։

MENENIUS.
Հէնց այն պատճառով, որ դու, լինելով այս շատ խելացի ապստամբութեան ամէնէն ստորն, ամէնէն անարգն, ամէնէն փուչը, միշտ էլ ամէնքից առաջ ես

ընկնում։ Դու, թշուառական, որ վազելու մէջ ամենավատն ես, առաջ ես վազում, որ մի բան շահես։ Դէ՛հ, պատրաստեցէք ձեր կոշտ լախտերը ու մահակները. հռոմը գալիս է իր մկների հետ պատերազմելու. մէկ կողմն անպատճառ կործանուելու է։

MARCIUS.
[Entering.] Շնորհակալ եմ։ Ի՞նչ է պատահել, դուք, անմիաբան թշուառականներ, որ ձեր կարծիքի խղճալի պզուկն այնքան քորում էք, որ ամբողջ մարմնով պալար էք դառնում։

CITIZEN I.
Մենք միշտ ձեզանից լաւ խօսք ենք լսել։

MARCIUS.
Ով քեզ պէս մարդուն լաւ խօսքեր ասէ, նա շողոքորթ է եւ աւելի ցած, քան թէ գարշելի. ի՞նչ էք պահանջում, դուք քոսոտ շներ, դուք, որ հաւան չէք ո՛չ խաղաղութեան, ո՛չ պատերազմի. մէկից դողում էք, միւսով խրոխտանում։ Ձեզ վստահողը, երբ ձեզ առիւծներ յոյս ունէր տեսնել, ճագար կը գտնէ. աղուէսների տեղ սագեր կը գտնէ։ Դուք, որ աւելի վստահելի չէք, քան վառ ածուխը՝ սառոյցի վրայ, կամ թէ կարկուտը՝ արեգակի տակ։ Ձեր շնորհքն այն է, որ գովէք նրան, ով իր յանցանքով դատապարտուած է։ Եւ անէծք կարդաք այն արդարութեան, որ դատապարտեց։ Ով որ մեծութեան արժանանում է, արժանանում է ձեր ատելութեան։ Ձեր փափագները, անառողջ մարդու ախորժակի պէս, այն են ցանկանում, ինչ սաստկացնում է հիւանդութիւնը. ով կախում ունի ձեր բարի շնորհից, նա լող է տալիս կապար թեւերով կամ թէ եղէգով կաղնի է կտրում։ Գնացէք կախուէք. ձե՞զ վստահանալ. ամէն մի րոպէ մի միտք էք փոխում. ազնիւ էք կոչում նրան, որ երեկ ձեր ատելին էր, անազնիւ նրան, որ ձեր պսակն էր։ Ի՞նչ է պատահել, որ այս քաղաքի տարբեր տեղերում ձայն էք բարձրացրել սենատի ընդդէմ, որ միակ բանն է, աստուածներից յետ, որից ահ ունիք. թէ ոչ, իրար միս պիտի ուտէիք։ Լաւ, ի՞նչ են ուզում։

MENENIUS.
Ցորեն, բայց իրենց որոշած գնով, որից, ասում են, շատ կայ քաղաքի ամբարների մէջ։

MARCIUS.
Թող գնան կախուին. ասո՜ւմ են, այո՜. նրանք նստում են կրակի կողքին եւ այնպէս կարծում, թէ շատ լաւ գիտեն՝ ի՛նչ է կատարւում կապիտոլի մէջ. թէ հաւանօրէն ո՛վ կը բարձրանայ. թէ ո՛վ է ընկնում, ով զօրեղանում. պաշտպան են կանգնում այս կամ այն խմբին, դուք, որ աւելի վստահելի չէք, քան վառ ածուխը՝ սառոյցի վրայ, կամ թէ կարկուտը՝ արեգակի տակ։ Ձեր շնորհքն այն է, որ գովէք նրան, ով իր յանցանքով դատապարտուած է։ Եւ անէծք կարդաք այն արդարութեան, որ դատապարտեց։ Ով որ մեծութեան արժանանում է, արժանանում է ձեր ատելութեան։ Ձեր փափագները, անառողջ մարդու ախորժակի պէս, այն են ցանկանում, ինչ սաստկացնում է հիւանդութիւնը. ով կախում ունի ձեր բարի շնորհից, նա լող է տալիս կապար թեւերով կամ թէ եղէգով կաղնի է կտրում։ Գնացէք կախուէք. ձե՞զ վստահանալ. ամէն մի րոպէ մի միտք էք փոխում. ազնիւ էք կոչում նրան, որ երեկ ձեր ատելին էր, անազնիւ նրան, որ ձեր պսակն էր։ Ի՞նչ է պատահել, որ այս քաղաքի տարբեր տեղերում ձայն էք բարձրացրել սենատի ընդդէմ, որ միակ բանն է, աստուածներից յետ, որից ահ ունիք. թէ ոչ, իրար միս պիտի ուտէիք։ Լաւ, ի՞նչ են ուզում։

MENENIUS.
Ցորեն, բայց իրենց որոշած գնով, որից, ասում են, շատ կայ քաղաքի ամբարների մէջ։

MARCIUS.
Թող գնան կախուին. ասո՜ւմ են, այո՜. նրանք նստում են կրակի կողքին եւ այնպէս կարծում, թէ շատ լաւ գիտեն՝ ի՛նչ է կատարւում կապիտոլի մէջ. թէ հաւանօրէն ո՛վ կը բարձրանայ. թէ ո՛վ է ընկնում, ով զօրեղանում. պաշտպան են կանգնում այս կամ այն խմբին, ամուսնացնում են ենթադրանքներով, կուսակցութիւններն ուժեղացնում են, վատաբանում են այն բոլոր մարդկանց, որոնց չեն սիրում, եւ

ստորացնում իրենց կարկատած կօշիկներից ցած։ Դրանք ասում են, թէ ցորեն շատ կայ։ Ի՜նչ լաւ կը լինէր, որ պատրիկեաններն իրենց խղճալը մէկդի դնէին, եւ ինձ թոյլ տային սուրս բանեցնել. հազարաւորներ այս ստրուկներից չորս կտոր արած՝ կը կուտակէի իրարու վրայ աւելի բարձր, քան թէ կարող եմ նիզակս նետել։

MENENIUS.
Չէ՛, սրանք գրեթէ խելքի են եկել, այո՛, որքան էլ զուրկ լինեն խելքից, սաստիկ երկչոտ են։ Բայց ի՞նչ է ասում միւս խումբը, խնդրեմ։

MARCIUS.
Ցրուեցան արդէն, անպիտանները՛. տրտնջում էին, թէ անօթի ենք, առակներ ասում. «Քաղցը քանդում է քարէ պատերը. թէ շներին էլ լափ է հարկաւոր, թէ կերակուրը բերնի համար է եւ հարուստների համար չէ միայն, որ աստուածները ցորեն են տալիս». այս փուչ խօսքերով դուրս էին թափում իրենց ողբերը. եւ հէնց որ նրանց պատասխան տրուեց, եւ խնդրանքներից մէկը ընդունուեց, անհեթե՛թ մէկը, որ պիտի սպանէ պատրիկեաններին, եւ ինքնավստահ իշխանութիւնը երկչոտ դարձնէ, այնպէս գլխարկներն օդն էին նետում, որ ուզում էին կարծես լուսնեակի եղջիւրից կախ տալ՝ մէկը միւսից բարձր աղաղակելով։

MENENIUS.
Ի՞նչ են ձեռք բերել։

MARCIUS.
Այն, որ հինգ տրիբուն, իրենց ընտրութեամբ, պաշտպանեն ռամկի խելքի փչածը. նրանցից մէկը իւնիուս բրուտոսն է, միւսը՝ սիցինիոս, եւ չգիտեմ ով։ Դժո՛խք բոլորը. պէտք է խուժանը նախ ամբողջ քաղաքն աւերած լինէր, որ ես զիջէի. նա ժամանակով պիտի զօրանայ իշխանութեան դէմ, եւ աւելի մեծ յաւակնութիւններ պիտի դուրս բերէ իբրեւ պատրուակ ապստամբութեան։

MENENIUS.
Զարմանալի է։

MARCIUS.
Տո՛ւն, թափթփածներ։

[Messenger enters on the run.]

MESSENGER.
Որտե՞ղ է արդեօք կայիոս մարցիոսը։

MARCIUS.
Այստեղ է. ի՞նչ կայ։

MESSENGER.
Լուրն այս է, տէր իմ. վոլսկերը նորէն զէնքի են դիմել։

MARCIUS.
Ուրախ եմ. ուրեմն առիթ կ՝ունենանք, որ մեր բորբոսած աւելորդները մի քիչ քամու տանք։ Տեսէք, լաւագոյն մեր աւագները։

[Cominius, Titus Lartius and Other Senators enter with Junius Brutus and Sicinius Velutus.]

SENATOR I.
Մարցիոս, ճիշտ եղաւ, ինչ որ վերջերս մեզ ասում էիր։ Վոլսկերը կրկին զէնքի են դիմել։

MARCIUS.
Եւ մի պետ ունին. տուլլոս աւֆիդիոս, որ ձեզ բաւական գլխացաւ կը տայ։ Մեղք է իմ կողմից նախանձել նրա մեծութեան վրայ. բայց եթէ մի բան կ՝ուզէի լինել, բացի ինչ որ ե՛մ, պիտի ցանկայի աւֆիդիոս լինել։

COMINIUS.
Դուք իրարու դէմ պատերազմել էք։

MARCIUS.
Աշխարհի կէսը կէսի դէմ կանգնէր, եւ նա՝ իմ կողմը, կ՝ապստամբէի՝ նրա՛ դէմ միայն կռուելու համար։ Մի առիւծ է նա, որին որսալը փառք է ինձ համար։

SENATOR I.
Այդ դէպքում, մարցիոս, գնա՛ այս կռուին կոմինիոսի հետ։

COMINIUS.
Դու խօսք ես տուել։

MARCIUS.
Իրաւ է, տէր իմ, եւ խօսք պահող եմ։ Լարտիոս, կը տեսնես, թէ մէկ անգամ էլ ինչպէս կը զարկեմ տուլլոսի գլխին։ Ի՞նչ, գոսացե՞լ ես. չե՞ս գալու մեզ հետ։

TITUS.
Ոչ, կայիոս մարցիոս. թէկուզ թիկն տամ մէկ յեցուկի վրայ եւ միւսով կռուեմ, էլի այս կռուից յետ չեմ մնալու։

MENENIUS.
Ահա ազնի՜ւ զարմ։

SENATOR I.
Եկէք կապիտոլ, ուր, հաստատ գիտեմ, մեր ամենամեծ բարեկամները սպասում են մեզ։

TITUS.
[To Cominus.] Դուք առաջ անցէք։ (մարցիոսին։) հիմա՝ դուք, տէր իմ։ Մենք՝ ձեզնից յետոյ. դուք արժանի էք նախապատուութեան։

COMINIUS.
Իմ ազնի՛ւ մարցիոս։

SENATOR I.
[To the Citizens.] Հեռացէք, հայդէ՛, գնացէք ձեր տուն։

MARCIUS.
Ոչ՛, թող գան մեզ հետ. չէ՞ որ վոլսկերը ցորեն շատ ունին. այս մկներին էլ տարէք յետներդ. թող ուտեն նրանց լի ամբարները։ Քա՛ջ ապստամբներ, ձեր արիութիւնն ինչպէ՛ս է փայլում։ Եկէք, խնդրում եմ։

[All exit save Sicinius and Brutus.]

SICINIUS.
Եղե՞լ է երբեք այս մարցիոսի պէս մի ամբարտաւան։

BRUTUS.
Իր հատը չունի։

SICINIUS.
Երբ ժողովրդի տրիբուն կարգուեցանք։

BRUTUS.
Դիտեցի՞ր նրա աչք ու շրթունքը։

SICINIUS.
Եւ հեգնանքները՛։

BRUTUS.
Երբ որ բորբոքուի, ստուածներին էլ ծաղրի կը բռնէ։

SICINIUS.
Համեստ լուսնին էլ կը հեգնաբանէ։

BRUTUS.
Այս պատերազմը կլանէ՛ նրան. շատ է վէսացել իր քաջութիւնից։

SICINIUS.
Այսպիսի տիպը, երբ փայփայւում է յաջողութիւնից, արհամարհում է այն իսկ ստուերը, որ միջօրէին իր ոտքի տակն էր։ շատ եմ զարմանում, թէ ինչպէ՛ս նրա գոռոզութիւնը կարող է տանել, որ կոմինիոսի ձեռքի տակ դրուի։

BRUTUS.
Համբաւը, որ նա ձգտում է շահել, եւ որին արդէն արժանացել է, միշտ աւելի լաւ կարող է պահուիլ եւ աւելացուիլ երկրորդ դիրքի մէջ։ Ինչ որ ձախ գնա, պետի յանցանքն է, թէկուզ մարդկային մեծագոյն գործը կատարած լինի. եւ դատարկամիտ դատափետումը պիտի հարայ տայ, եթէ մարցիոսը գործի գլուխ լինէր, այնպէս չէր լինի։

SICINIUS.
Այո՛, եւ եթէ գործը լաւ գնայ. մարդկանց կարծիքը, որ պինդ փարած է կայիոս մարցիոսին, պիտի գողանայ ամէն արժանիք կոմինիոսից։

BRUTUS.
Այո՛, այդպէս է, եւ կոմինիոսի համբաւի կէսը մարցիոսին կ՝երթայ, թէեւ մարցիոսը գործած չլինի. եւ սխալները մարցիոսի համար պատիւ կը դառնան, թէեւ անտեղի։

SICINIUS.
Գնանք այստեղից, տեսնենք, թէ բանակն ինչպէ՛ս է ղրկւում, թէ նա ի՛նչ ձեւով, բացի իր վարուելու եզական կերպից, գնում է կռուի։

BRUTUS.
Լաւ, եկէք գնանք։

[They exit.]

]0[

## ACT I. SCENE II.

Corioli. Senate House. Tullus Aufidius enter with certain Senators.

SENATOR I.
Ուրեմն, աւֆիդիոս, քո կարծիքն այն է, որ հռոմայեցիք տեղեկացել են մեր խորհուրդներին եւ գիտեն, թէ մենք ի՜նչ գործի վրայ ենք։

AUFIDIUS.
Ձեր կարծիքն այդ չէ՞։ խորհե՞լ են երբեք որեւէ մի բան այս պետութեան մէջ, որ գործադրուէր, նախքան թէ հռոմին լուր հասած լինէր։ Չորս օր հազիւ կայ, որ ես այնտեղից[2] լուր եմ ստացել. ահա բառերը. կարծեմ նամակն էլ այստեղ է. ահա. [Reads.] «*Զօրք են հաւաքել, զօրք են հաւաքել. բայց դեռ յայտնի չէ՝ արեւելքի՞ դէմ, թէ՞ արեւմուտքի. մեծ թանկութիւն կայ. եւ լուր է շրջում, թէ կոմինիոսը եւ կայիոս մարցիոս՝ ձեր հին թշնամին, որ շատ աւելի ատուած է հռոմում, քան թէ ձեզանից, եւ տիտոս լարտիոս՝ սաստիկ քաջասիրտ մի հռոմայեցի, երեք պետերն են այս արշաւանքի, ուր էլ առաքուի։ շատ հաւանօրէն դէպի ձեր կողմը։ Լաւ մտածեցէք*»։

SENATOR I.
Մեր զօրքը դաշտն է, երբեք մեր մտքում կասկած չէ եղել, որ հռոմ պատրաստ է մեր դէմ դուրս գալու։

AUFIDIUS.
Ոչ էլ խորհել էք, թէ անտեղի է մեծ ծրագիրներդ ծպտուած պահել մինչեւ այն

---

2 «Թող մեր երազանքները երազեն առանց մեզ: Թող մեր մտքերը մտածեն առանց մեզ: Ժամանակը հասել է: լացող հրեշտակների ժամանակը»:

րոպէն, որ հարկադրուած իրենք երեւան. բայց դեռ թուխսի մէջ հռոմը, երեւի, տեսել է նրանց։ Մեր ծրագիրը, եթէ յայտնուի, կրճատուելու է. մտադիր էինք մի քանի քաղաք մեր ձեռքը ձգել, նախքան թէ հռոմը լուր առնէր, թէ մենք ոտքի ենք կանգնել։

SENATOR II.
Ազնիւ աւֆիդիոս, առ հրովարտակդ. հասիր գնդերիդ. եւ թող կորիոլին մեր պաշտպանութեան. եթէ հաստատուին մեր քաղաքի շուրջ, յետ բեր բանակդ, որ մեզ ազատես. բայց դու կը տեսնես, որ նրանք մեր դէմ միտք չունին գալու։

AUFIDIUS.
Օ՜, մի կասկածէք. իմ ասածները հաստատ բաներ են։ Աւելին կ՝ասեմ. նրանց բանակից որոշ հատուածներ ճամփայ են ընկել, եւ այս կողմ միայն։ Մնացէք բարով, յարգելի տիարք իմ. եթէ պատահի, որ ես եւ մարցիոսն իրար հանդիպենք, երդուել ենք մեր մէջ, որ այնքան կռուենք, մինչեւ ես կամ նա ուժասպառ ընկնենք։

EVERYONE.
Դիք ձեզ օգնական։

AUFIDIUS.
Եւ ձեզ պահապան։

SENATOR I.
Բարի ճանապա՜րհ։

SENATOR II.
Բարի ճանապա՜րհ։

EVERYONE.
Բարի ճանապա՜րհ։ [They exit.]

## ACT I. SCENE III.

Rome. Apartment in Marcius' House. Volumnia and Virgilia enter; they sit down on two stools and sew.

### VOLUMNIA.

Խնդրում եմ, աղջիկս, երգիր կամ թէ աւելի ուրախ բաներ խօսիր։ Եթէ ես էլ այնպիսի մի ամուսին ունենայի, ինչպիսին որդիս է, աւելի մեծ հրճուանք պիտի զգայի, որ նա բացակայ լինէր եւ փառք շահէր, քան թէ գրկախառնէր ինձ իր անկողնու մէջ եւ ամենաջերմ սէրը ցոյց տար։ Երբ նա տակաւին մի քնքշակազմ[3] տղայ էր, արգանդիս միակ զաւակը, եւ պատանութիւն ու վայելչութիւն, ամէնքի աչքերը նրա կողմն էին գնում, երբ ոչ մի մայր մէ՛կ ժամ անգամ աչքից չէր հեռացնի այդպիսի զաւակին, թէկուզ մի թագաւոր մի ամբողջ օր աղաչէր նրան, ես, նկատելով, թէ փառքը որքան սազ կը գար այդպիսի գեղեցկութեան, եւ թէ նա մի սոսկ պատկեր կը լինէր պատից կախելու, եթէ անուն շահելու տենչը աշխոյժ չտար նրան, ուրախութեամբ թոյլ տուի, որ նա վտանգ որոնէ այնտեղ, ուր կարող էր համբաւ գտնել։ Ուղարկեցի նրան մի դժնդակ պատերազմի, որից վերադարձաւ ճակատը կաղնիով պսակուած։ Ասում եմ քեզ, աղջիկս, սիրտս ուրախութիւնից այնպէս չկայթեց, երբ առաջին անգամ լսեցի, որ տղան մարդ է դարձել, որքան հիմա, երբ առաջին անգամ տեսնում եմ, որ նա տղամարդ է դարձել։

### VIRGILIA.

Իսկ եթէ կռուի մէջ մեռած լինէ՞ր, տիկին. այն ժամանակ ի՞նչ։

### VOLUMNIA.

Այն ժամանակ նրա բարի անունը կը լինէր ինձ համար որդի. ես նրա համբաւի մէջ կը գտնէի սերունդ։ Անկեղծ ասեմ քեզ, եթէ տասներկու որդի ունենայի՝ ամէն մէկը նոյնքան քաղցր իմ սրտին, ամէն մէկը նոյնքան սիրելի, որքան քո եւ իմ բարի մարցիոսը, ես կը նախընտրէի, որ տասնմէկը ազնուօրէն մեռնէին իրենց

3 «Մի թարթիր»։

հայրենիքի համար, քան թէ մէկը մեղկօրէն յղփանար անգործութեան մէջ։

[Maid enters.]

MAID.
Տիկին վալերիան եկել է, տիրուհի, ձեզ այցելելու։

VIRGILIA.
Խնդրում եմ թոյլ տաք, որ ես ներս քաշուիմ։

VOLUMNIA.
Չպէտք է գնաս։ Կարծես լսում եմ այնտեղ ամուսնուդ թմբուկի ձայնը, տեսնում եմ ինչպէ՛ս նա, աւֆիդիոսի մազերից բռնած, գետին է զարկում. որպէս մանուկներն արջի առաջից փախչում են վրլսկերն, երբ նա գալիս է. կարծես տեսնում եմ, այսպէս, իր ոտքը տափին խփելով, աղաղակում է։ *«Եկէք, երկչոտներ՝ վախով յղացուած, թէպէտեւ հռոմում աշխարհ էք եկել»։* Յետոյ, սրբելով արնոտ ճակատը զրահապատ ձեռքով, առաջ է նետւում մի հնձուորի պէս, որ պարտական է կա՛մ բոլորն հնձել, կա՛մ զրկուիլ վարձից։

VIRGILIA.
Արիւնո՛տ ճակատ. երկի՜նք, ոչ արիւն։

VOLUMNIA.
Գնա՛, դու, յիմար, արիւնն աւելի սազում է մարդուն, քան թէ ոսկեզօծն իր յուշարձանին։ Հեկաբի կուրծքը, երբ ծիծ էր տալիս մանուկ հեկտորին, այնքան սիրուն չէր, որքան հեկտորի ճակատը՝ այն, ինչ արիւն էր նետում յոյն սրի վրայ, արհամարհանքով։ Ասա տիկնոջը, պատրաստ ենք նրան հիւրասիրելու։ Սպասուհին

[Maid exits.]

VIRGILIA.
Երկինքն ազատէ իմ տէր ամուսնու ժանտ աւֆիդիոսից։

VOLUMNIA.
Նա աւֆիդիոսի գլուխը կը դնէ իր ծնկի տակը եւ ոտքը՝ վզին։

[Maid re-enters with Valeria and her Servant.]

VALERIA.
Տիկիններս, բարի օ՜ր ձեզ։

VOLUMNIA.
Անուշի՜կ տիկին։

VIRGILIA.
Ուրախ եմ ձեզ տեսնելուս, յարգելի տիկին։

VALERIA.
Ինչպէ՞ս էք երկուսդ. այս ի՞նչ տուն պահողներ էք դարձել. ի՞նչ էք կարում այստեղ։ Սիրուն ծաղկեկար, իրա՜ւ որ։ Մանչուկդ ինչպէ՞ս է։

VIRGILIA.
Շնորհակալ եմ ձեր յարգութիւնից. լաւ է, սիրելի տիկին։

VOLUMNIA.
Աւելի է սիրում սրեր տեսնել եւ թմբուկ լսել, քան թէ իր վարժապետին նայել։

VALERIA.
Ազնիւ խօսք, իսկ եւ իսկ հօր զաւակը. շատ սիրուն տղայ է, երդւում եմ։ Չորեքշաբթի օր կէս ժամից աւելի կանգնած նրան էի նայում. այնպէս վճռական կերպարանք ունի։ Նայում էի, երբ վազ էր տալիս մի ոսկեգոյն թիթեռնի ետեւից եւ

երբ բռնում էր, նորէն բաց էր թողնում, յետոյ նորէն ուզում էր բռնել. մի անգամ գլորուեց, գետին ընկաւ, յետոյ վեր կացաւ եւ նորէն բռնեց նրան, բայց չգիտեմ՝ գետին ընկնելո՞ւց կատաղեց, թէ ինչպէս, ատամները այսպէս սեղմեց եւ թիթեռնին ծուիկ-ծուիկ արաւ։ Օ՜, երդւում եմ, ծուիկ-ծուիկ արաւ։

VOLUMNIA.
Ճիշտ իր հօր պէս, երբ բարկացած է։

VALERIA.
Իսկապէս, հա՛, ի՜նչ ազնիւ երեխայ է։

VIRGILIA.
Շատ չարաճճի է, տիկին։

VALERIA.
Դէ լաւ, թո՛ղ այդ ասեղնագործը, պէտք է այսօր անգործ տիկինների պէս ինձ հետ ժամանակ անցնէք։

VIRGILIA.
Ո՛չ, սիրելի տիկին. ես տնից դուրս չեմ գնայ։

VALERIA.
Տնից դուրս չե՞ս գնայ։

VOLUMNIA.
Պէ՛տք է դուրս գնայ, պէ՛տք է։

VIRGILIA.
Իրաւ ո՛չ, եթէ թոյլ տաք. ոտքս այս շեմքից դուրս չեմ դնի, մինչեւ որ ամուսինս պատերազմից յետ չգայ։

VOLUMNIA.
Բա՛հ, խիստ անմիտ բան է, որ այդպէս փակւում ես տան մէջ։ Ե՛կ. պէտք է այցելութեան գնաս մեր բարեկամուհուն, որ ծննդական է։

VIRGILIA.
Արագ կազդուրուում կը մաղթեմ նրան եւ աղօթքներովս կ՝այցելեմ, բայց նրա մօտ գնալ չեմ կարող։

VOLUMNIA.
Եւ ինչո՞ւ, խնդրեմ։

VIRGILIA.
Ոչ թէ նեղութիւն չեմ ուզում քաշել կամ թէ նրան չեմ սիրում։

VALERIA.
Ի՞նչ է, ուզում ես մի երկրորդ պենելոպ դառնա՞լ. բայց, ասում են, նրա մանած բոլոր թելը ոդիսեւսի բացակայութեան ժամանակ իթաքան լցրեց ցեցերով, ուրիշ ոչինչ։ Ե՛կ. կ՝ուզէի, որ այդ քաթանը մատներիդ պէս զգայուն լինէր, որ սիրտդ գութ ընկնելով՝ նրան այնքան չծակծկէիր։ Դէ լաւ, ե՛կ երթանք։

VIRGILIA.
Ո՛չ, տիկինս, ներեցէք ինձ. իսկապէս չեմ ուզում դուրս գալ։

VALERIA.
Իսկապէս պէտք է գաս ինձ հետ, եւ ես մի շատ լաւ լուր կ՝ասեմ ամուսնուդ մասին։

VIRGILIA.
Ո՛չ, բարի տիկին, դեռ լուր չէ կարող եկած լինել։

VALERIA.
Ճիշտ եմ ասում, կատակ չեմ անում. երեկ գիշեր լուր եկաւ։

VIRGILIA.
Իրա՞ւ, տիկին։

VALERIA.
Լուրջ եմ ասում, իսկապէս. մի սենատորից լսեցի. ահա թէ ինչ. վոլսկերը մի բանակ են դուրս ուղարկել. կոմինիոս զօրապետը մեր հռոմէական զօրքի մի մասի հետ գնացել է նրա դէմ. ամուսինդ եւ տիտոս լարտիոս նրանց քաղաքը՝ կորիոլին, պաշարել են եւ կասկած չունին, որ կը տիրեն, եւ պատերազմը կարճ կը լինի։ ճշմարիտ է այս, ազնիւ խօսք։ Ուրեմն, ե՛կ գնանք։

VIRGILIA.
ներողութիւն եմ խնդրում, սիրելի տիկին. ամէն ուրիշ բանի մէջ պատրաստ եմ ձեզ հնազանդել։

VOLUMNIA.
Թող իր ուզածն անէ. այս տրամադրութեան մէջ որ կայ, մեր ուրախութիւնն էլ կը քչացնէ։

VALERIA.
Ազնիւ խօսք, այդպէս է, կարծեմ։ Ուրեմն, մնաս բարով։ Եկէք, իմ բարի, անուշիկ տիկին։- խնդրեմ, վիրգիլիա, դէն նետիր այդ հանդիսաւորութիւնդ եւ ե՛կ մեզ հետ։

VIRGILIA.
Ո՛չ, մէ՛կ խօսքով. իսկապէս չպէտք է գամ. ձեզ լաւ զուարճութիւն եմ ցանկանում։

VALERIA.
Որ այդպէս է, մնաս բարով։

[They all exit.]

ACT I. SCENE IV.

Before Corioli. Marcius, Titus Lartius, Officers and Soldiers all enter.

MARCIUS.

Տես, լուր է գալիս. գրաւ կը դնեմ, որ ընդհարուել են։

LARTIUS.

Ձիս ձիուդ դէմ՝ ոչ։

MARCIUS.

Գրաւդ ընդունեցի։

LARTIUS.

Համաձա՛յն։

MARCIUS.

Մեր զօրապետը բախուե՞ց թշնամուն։

MESSENGER.

[Entering.] Իրար դիմաց են, բայց դեռ չեն բախուել։

LARTIUS.

Իմն է ուրեմն այն պատուական ձին։

MARCIUS.

Կը գնեմ քեզնից։[4]

4 «Ասա, որ դու սպանդանոցում չես աշխատում»։

LARTIUS.
Չէ, ոչ կը ծախեմ, ոչ էլ կ՝ընծայեմ, այլ յիսուն տարով փոխ կը տամ քեզի։ Հրաւիրիր քաղաքն անձնատուութեան։

MARCIUS.
Որքա՞ն են հեռու այդ բանակները։

MESSENGER.
Այստեղից հազիւ մէկ ու կէս մղոն։

MARCIUS.
Կը լսենք ուրեմն կռուի ձայները, նրանք էլ՝ մերը։ Մա՛րս, խնդրում եմ քեզ, թափ շնորհիր մեզ, որ կարողանանք ծխուն սրերով քայլել այստեղից, եւ դաշտում կռուող մեր ընկերներին օգնութեան հասնել։

[Two Senators enter.]

MARCIUS [cont.]
Տուլլոս աւֆիդիոս այդտե՞ղ է արդեօք։

SENATOR I.
Ո՛չ, ոչ էլ այլ ոք, որ նրանից շատ վախենայ քեզնից, այլ քչից էլ քիչ։

[War drums heard far off.]

SENATOR I [cont.]
Լսեցէք այնտեղ, մեր թմբուկները դաշտ են դուրս բերում մեր քաջ տղերքին։ Եւ աւելի շուտ պատրաստ ենք քանդել մեր պարիսպները, քան թէ կ՝ընդունենք, որ մակաղեն մեզ. մեր մեծ դռները, որոնք տակաւին փակուած են թւում, եղէգներով ենք միայն ամրացրել. իրե՛նք կը բացուին։

[More distant drumming.]

SENATOR I [cont.]
Լսեցէք, հեռուից. աւֆիդիոսն է այն. լսեցէք, թէ ի՞նչ գործ է կատարում ձեր ցան ու ցրիւ այն բանակի մէջ։

MARCIUS.
Այո՛, կռւում են։

LARTIUS.
Նրանց աղմուկը մեզ հրահանգ լինի։ Սանդուղքնե՛ր, էհէ՜յ։

[The Volsces enter and cross over the stage.]

MARCIUS.
Վախ չունին մեզնից, այլ դուրս են խուժում իրենց քաղաքից։ Բռնեցէք հիմա ձեր վահանները սիրտներիդ առաջ, եւ կռիւ տուէք վահաններից իսկ ամուր սրտերով։ Յառա՛ջ, քաջ տիտոս. նրանք աւելի քամահրում են մեզ, քան կարծում էինք, եւ դա զայրոյթից քրտնեցնում է ինձ։ Եկէք, ընկերներ, ո՛վ որ նահանջէ, վոլսկ է ինձ համար եւ պիտի զգայ իմ սրի ծայրը։ [Exits.]

[Chaos and war. Romans and Volsces fighting. Romans are beaten back to their trenches.]

MARCIUS.
[Enters, cursing.] Հարաւի բոլոր վարակումները թափուին ձեր գլխին, ամօթանք հռոմի, դուք, նախիր։ Թո՛ւի ձեզ. խոյլեր ու խոցեր այնպէս ծածկեն ձեզ, որ դեռ հեռուից գարշելի լինէք, եւ մի մղոնից վարակէք իրար հողմի հակառակ։ Սագի՛ հոգիներ, որ ադամորդու կերպարանք ունիք, ինչպէ՞ս խոյս տուիք այն ստրուկներից, որոնց կապիկներ կարող են յաղթել։ Պլուտո՛ն եւ դժո՛խք, թիկունքից զարկուա՛ծ. կռնակներ կարմիր, եւ դէմքեր դժգոյն՝ փախից եւ վախից տենդահար դարձած։ Սիրտ առէք, մարդիկ, եւ յարձակուեցէք ձեր բոլոր ուժով, թէ ոչ, երկնքի

բոցերը վկա՛յ, թշնամուն թողած՝ ձեր դէմ կը կռուեմ։ Յառա՛ջ, ասում եմ, եթէ պինդ կանգնէք, ծեծ կը տանք նրանց, կը քշենք մինչեւ իրենց կանանց մօտ, ինչպէս որ նրանք հալածում են մեզ մինչեւ խրամներս։

[Another Drum alarm. Volsces and Romans re-enter and the fight is renewed. Volsces retire into Corioli and Marcius follows them to the Gates.]

MARCIUS [cont.]
Դե՛հ, եկէք հիմա. դռները բաց են. լաւ օգնեցէք ինձ. բախտը դռները հալածողների համար է բացում, ոչ փախչողների։ Ուշ դարձրէք ինձ, դուք էլ նոյնն արէք։

[Marus enters through the city Gates.]

SOLDIER I.
Խենթ յանդգնութիւն. ես՝ ո՛չ։

SOLDIER II.
Ոչ էլ ես։

[Doors swing closed. Marcus finds himself locked in.]

SOLDIER I.
Ներս առան նրան, դուռը փակեցին։

EVERYONE.
Ընկաւ պտուկը, հաստա՛տ, վերջացա՛ւ։

[Lartius enters.]

LARTIUS.
Մարցիոս ի՞նչ եղաւ։

EVERYONE.
Սպանուեց, տէր իմ. տարակոյս չկայ։

SOLDIER I.
Երբ փախչողներին հետապնդում էր կրունկներին հասած, նրանց հետ մէկտեղ մտաւ քաղաքը, եւ նրանք յանկարծ դուռը փակեցին. նա մենակ մնաց ամբողջ քաղաքին պատասխան տալու։

LARTIUS.
Օ՛, ազնի՛ւ ընկեր, դու, ո՛վ զգայունդ, ամուր, քան ձեռքիդ անզգայ սուրը, եւ երբ նա ճկուն, դու աննկուն ես։ Լքուեցա՛ր, մարցիոս. մի անեղծ յակինթ խոշոր, որչափ դու, չէր լինի քո չափ թանկագին գոհար։ Մի զինուոր էիր՝ կատոնի սրտի՛ ուզածի նման, ոչ հարուածներով միայն սոսկալի եւ սարսափելի, այլ գոռ նայուածքովդ ու գոռոցներիդ շանթանման ճայթով թշնամիներիդ դողացնում էիր, որպէս թէ աշխարի տենդից բռնուած եւ ցնցւում լինէր։

[Marcius re-enters, bleeding, fending off the enemy on all sides.]

SOLDIER I.
Նայեցէ՛ք, տէր իմ։

LARTIUS.
Ա՛հ, մարցիոսն է. ազատենք նրան, եւ կամ ամէնքս էլ նրա հետ ընկնենք։

[They fight and all enter the City together.]

]0[

## ACT I. SCENE V.

Within Corioli. Street. Three Romans enter with spoils.

ROMAN I.

Հռոմ կը տանեմ այս։

ROMAN II.

Ես էլ՝ այս։

ROMAN III.

Թո՛ւի սրա վրայ, արծաթ կարծեցի։ Դուրս են գնում. կռուի ժխոր հեռուից։

[Marcius, Lartius and a Trumpeteer all enter.]

MARCIUS.

Մէկ այստեղ նայիր, այս թալան անող նահանջողներին, որ իրենց ժամը գնահատում են մի ճաք դրախմի չափ։ Բարձեր, երկաթներ, որ գրոշ չարժեն, կապար գդալներ, մաշուած բաճկոններ, որ դահիճները պիտի թաղէին այն անձերի հետ, որ հագել էին, այս ցած ստրուկներն աւար են առնում կռիւը չաւարտուած։ Գետինը մտնեն. եւ տես, զօրապետն ի՛նչ ձայն է հանում. նրա՛ դէմ. նա է հոգուս ատելին, այն աւֆիդիոսը, որ միջից ճեղքեց հռոմի բանակը։ Ուրեմն, քաջ տիտոս, բաւական զօրք առ, որ կարողանաս քաղաքը պահել. իսկ ես նրանց հետ, որոնք սիրտ ունին, պէտք է կոնսուլին օգնութեան հասնեմ։

LARTIUS.

Ազնիւ տէր, վէրքիցդ արիւն է հոսում. մարզանքդ սաստի՛կ ուժգին է եղել մի երկրորդ անգամ կռուելու համար։

MARCIUS.

Ոչ, մի՛ գովիր ինձ. մարզանքս դեռեւս ինձ չէ տաքացրել։ Բարի՛ յաջողում. թափածս արիւնը առողջարար է, ոչ վտանգաւոր. աւֆիդիոսի դէմ ուզում եմ այսպէս դուրս

գալ եւ կռուել։

LARTIUS.
Ուրեմն, բախտը՝ սիրուն դիցուհին, թող խո՛ր սիրէ քեզ, եւ իր դիւթանքով ախոյեաններիդ սրերը շեղէ. ո՛վ խիզախ պատրիկ, քեզ յաղթութիւնը մանկլաւիկ դառնայ։

MARCIUS.
Եւ քեզ, բարեկամ, որչափ որ նրանց, որոնց հասցրել է բարձրագոյն տեղին։ Բարի՛ յաջողում։ [Exits.]

LARTIUS.
Պատուակա՛ն մարցիոս։ Մարցիոս  գնա, փող փչիր հրապարակի մէջ, եւ կանչիր այնտեղ քաղաքի բոլոր պաշտօնեաներին, որ գան լսելու մեր միտքը։

[They exit as the Trumpeteer strikes the first note.]

]0[

ACT I. SCENE VI.
Near the Camp of Cominius. Cominius and Soldiers enter, retreating.

COMINIUS.
Շունչ առէք, տղերք. մենք լաւ կռուեցինք. դուրս եկանք որպէս հռոմայեցիներ, ո՛չ դիմադրելիս խենթօրէն խիզախ, ո՛չ նահանջելիս՝ երկչոտ։ ընկերներ, հաւատացէք ինձ, նորէն մեր վրայ յարձակում կ՝անեն։ Մինչ կռւում էինք, հողմը մէջ առ մէջ ձայներ էր բերում մեր ընկերների յարձակումներից։ Հռոմի աստուածներ, ուղեցոյց եղէք նրանց յաղթութեան, ինչպէս նաեւ մեզ, որ մեր բանակներն իրար հանդիպին ժպտուն դէմքերով եւ երախտագէտ՝ զոհեր բերեն մեզ։

MESSENGER.
[Entering.] Տէր իմ, կորիոլի քաղաքացիքը դուրս յարձակուեցան եւ կռիւ տուին տիտոս լարտիոսի եւ մարցիոսի դէմ. ես տեսայ՝ ինչպէս մերոնց քշեցին մինչեւ խրամները, եւ յետոյ եկայ։

COMINIUS.
Թէեւ ասածդ ճշմարիտ լինի, բայց լաւ չես խօսում։ Ե՞րբ պատահեց այդ։

MESSENGER.
Մի ժամ կայ, տէր իմ, եւ դեռ աւելի։

COMINIUS.
Մի մղոն չկայ. հիմա՛ լսեցինք նրանց թմբուկը. ինչպէ՞ս ես կարող մի մղոնի վրայ մէկ ժամ փչացնել եւ ուշ լուր բերել։

MESSENGER.
Վոլսկ լրտեսները ետեւիցս ընկան, եւ ստիպուեցայ երեք-չորս մղոն խոտորել ճամփից. եթէ ոչ, տէր իմ, կէս ժամում լուրս բերած կը լինէի։

COMINIUS.
Ո՞վ է նա այնտեղ. կարծես մաշկուած է։ Երկի՜նք, մարցիոսի կերպարանքն ունի. ուրիշ անգամ էլ նրան տեսել եմ այս կերպարանքով։

MARCIUS.
[Within.] Ո՞ւշ եմ մնացել։

COMINIUS.
Հովիւն այնպէս շուտ կարող չի զանազանի ամպրոպը թմբկից, ինչպէս ես գիտեմ մարցիոսի ձայնը հասարակ ձայնից։

MARCIUS.
[Entering.] Ո՞ւշ եմ մնացել։

COMINIUS.
Այո՛, սաստիկ ուշ, եթէ եկել ես ոչ թէ ուրիշի, այլ քո սեփական արիւնով թաթախ։

MARCIUS.
Ե՛կ, թող գրկեմ քեզ բազուկներիս մէջ այնպէս կորովով, ինչպէս հարսիս հետ նոր սէր անելիս, եւ ցնծուն սրտով, ինչպէս այն րոպէն, երբ որ աւարտուեց հարսանիքի օրը, եւ վառ ջահերը մեզ տանում էին դէպի առագաստ։

COMINIUS.
Քաջերի ծաղի՛կ, ի՞նչ լուր լարտիոսից։

MARCIUS.
Զբաղուած է նա հրովարտակներով՝ դատապարտելով ոմանց աքսորի, ոմանց՝ փրկանքի, եւ ոմանց՝ մահուան. մէկին խղճալով, միւսին սաստելով, եւ յանուն հռոմի կորիոլին սանձած քծնող շան նման, որ երբ մարդ ուզէ, արձակէ որսի։

COMINIUS.
Այն ստրուկն ո՞ւր է, որ պատմեց, թէ ձեզ հետ են նստեցրել մինչեւ խրամներդ։ Ո՞ւր է այն մարդը, կանչեցէք այստեղ։

MARCIUS.
Թող բանին կենայ. նա ճիշտ է պատմել։ Իսկ եթէ խօսենք մեր պարոններից, ռամիկ խուժանից։ Ժանտախտը տանէ՛. տրիբունունե՞ր նրանց. մուկը չէ փախչում կատուի առաջից այնպէս սարսափած, ինչպէս որ նրանք իրենցից վատթար սրիկաներից։

COMINIUS.
Բայց դու ի՞նչ կերպով յաղթող դուրս եկար։

MARCIUS.

Րոպէ՞ն է հիմա դրանք պատմելու. չեմ կարծում, տէր իմ. ո՞ւր է թշնամին. կռուի յաղթո՞ղն էք. եթէ չէք, ինչո՞ւ պէտք է ձեռք քաշէք, մինչեւ որ դառնաք։

COMINIUS.

Մարցիոս, կռուեցինք մեզ խիստ աննպաստ պայմանների մէջ եւ նահանջեցինք մեր նպատակին հասնելու համար։

MARCIUS.

Որտե՞ղ է նստած նրանց բանակը. եւ գիտէ՞ք արդեօք՝ ուր են զետեղել իրենց ամէնէն ընտիր գունդերը։

COMINIUS.

Իմ ենթադրանքով՝ ճակատի գունդերն անտիատներն են, նրանց ամէնէն քաջ ռազմիկները. աւֆիդիոսն ինքն է, իրենց բուն յոյսը։ Եւ նրանց գլուխը։

MARCIUS.

Աղաչում եմ ձեզ, ի սէր մեր բոլոր միասին մղած պատերազմների, եւ մեր միասին թափած արիւնի, եւ այն ուխտերի, որ մենք արել ենք ընկեր մնալու, որ իսկոյն եւեթ ինձ ճակատեցէք քաջ աւֆիդիոսի եւ նրա ընտիր անտիատների դէմ, եւ ոչ մի րոպէ չդանդաղանաք, այլ լցնենք օդը քաշած սրերով եւ սլաքներով եւ փորձի դնենք այս ներկայ ժամը։

COMINIUS.

Թէեւ կ՝ուզէի, որ քեզ տանէին մի մեղմ բաղանիք եւ բալասաններ դնէին մարմնիդ, սակայն չեմ կարող խնդրանքդ մերժել։ ընտրիր այն մարդկանց, որոնք կարող են օժանդակ լինել քո ձեռնարկութեան։

MARCIUS.

Ինձ պէտք են միայն ամէնէն ուժգին ցանկացողները. եթէ կայ այստեղ այնպիսի մի ոք, եւ մեղք կը լինէր կասկած յղանալ, որին երեսս շաղախող ներկը հաճելի

լինի, որ ինքն իր մասին պակաս վախենայ, քան վատ համբաւից, մի մարդ, որ խորհէ, թէ ազնիւ մահը լաւ է վատ կեանքից, թէ իր հայրենիքն աւելի արժէ, քան թէ իր անձը, թող ինքը մենակ կամ թէ նոյնախոհ ուրիշների հետ, սուրն այսպէ՛ս ճօճէ՝ իր յօժար կամքը յայտնելու համար, եւ թող հետեւի իսկոյն Մարցիոսին։

[Soldiers all shout and wave their swords. They take him up on their arms and toss up their caps.]

MARCIUS [cont.]
Օ՛, հէնց ի՞նձ մենակ. ի՞նչ է, ձեր սո՞ւրն եմ, եթէ այս ցոյցերն արտաքին բան չեն, ո՞ր մէկն է ձեզնից, որ չորս վոլսկ չարժէ. ո՞ր մէկն է, որ մեծ Աւֆիդիոսի դէմ կարող չլինի նոյնքան ամրակուռ մի վահան կրել, որքան նրանը։ Թէեւ ամէնքից շնորհակալ եմ, սակայն ամէնքից որոշ թիւ միայն կարող եմ ընտրել. մնացածները մի այլ կռուի մէջ կը տանեն գործը, երբ գործը կ՝անչէ։ [To Cominius.] Քայլեցէ՛ք խնդրեմ. եւ թող չորս հոգի ընտրեն շտապով իմ զօրագունդը ամէնէն ուժգին ցանկացողներից։

COMINIUS.
Յառա՛ջ, ընկերներ. եւ արդարացրէք այս ցոյցը գործով, ու բաժանեցէք ամէն ինչ մեզ հետ։

[They exit.]

][][

## ACT I. SCENE VII.

The Gates of Corioli. Titus Lartius enters, having set a guard upon Corioli, moving with drum and trumpet toward Cominius and Caius Marcius, enters with a lieutenant a party of Soldiers, and a Scout.

LARTIUS.

Այսպէս, դռները պէտք է լաւ պահուին. թող ամէն մէկը պարտքը կատարէ կարգադրածիս պէս։ Երբ մարդ ուղարկեմ, հարիւրակները ճամփայ դիր իսկոյն մեր օգնութեանը։ Մնացորդը բաւ է կարճ պաշտպանութեան. եթէ դաշտի մէջ պարտութիւն կրենք, ապա քաղաքն էլ չենք կարող պահել։

LIEUTENANT.

Միամիտ եղէք մեր ջանքի մասին։

LARTIUS.

Գնա՛ ուրեմն, եւ մեր ետեւից փակիր դռները։ Ե՛կ, մեր ուղեցո՛յց, եւ հռոմէական բանակը տար մեզ։ [They exit.]

][][

## ACT I. SCENE VIII.

A field of battle between the Roman and the Volscian Camps. Marcius and Aufidius enter from opposite sides.

MARCIUS.

Քե՛զ հետ կը կռուեմ, ուրիշ ոչ ոքի. ես քեզ ատում եմ աւելի, քան թէ մի խօսք կոտրողի։

AUFIDIUS.

Ես էլ քեզ՝ նոյնչափ. աֆրիկն օձ չունի, որ այնքան ատեմ, որքան ատում եմ քո նախանձելի փառք ու համբաւդ։ Ամուր դիր ոտքդ։

MARCIUS.
Ով որ նահանջէ, թող մեռնի որպէս միւսի ստրուկը, եւ աստուածները պատիժ տան նրան։

AUFIDIUS.
Թէ փախչեմ, մարցիոս, սուլիր ետեւիցս, ինչպէս ճագարի։

MARCIUS.
Երեք ժամ առաջ, տուլլոս, ես մենակ պատերազմեցի ձեր կորիոլիի պարիսպներից ներս, եւ ուզածս արի. ի՜մ արիւնս չէ, որ դու տեսնում ես ինձ դիմակ դարձած։ Վրէժիդ համար լարիր քո բոլոր կարողութիւնը։

AUFIDIUS.
Եթէ հեկտորը լինէիր անգամ, մտրակն այն ազգի, որին պարծանքով ձեր ծնողն էք կանչում, այստեղ իմ ձեռքից չէիր ազատուի։

[They fight until Volsces come to the aid of Aufidius.]

AUFIDIUS [cont.]
Պատրաստակամնե՛ր, սակայն ոչ քաջեր, ինձ ամօթ բերիք ձեր այդ անիծեալ օժանդակութեամբ։

[Fighting continues as everyone exits the stage.]

][][

## ACT I. SCENE IV.

The Roman Camp. Retreat is sounded. Cominius and Romans enter from one side; at the other side Marcius, with his arm in a scarf, enters with other Romans.

### COMINIUS.

Եթէ մի առ մի այս օրուայ գործերդ ուզէի պատմել, ինքդ արածներիդ չէիր հաւատայ. բայց ես բոլորը կը պատմեմ մի տեղ, ուր սենատորներ արտասուք խառնեն ժպիտների հետ, մեծ պատրիկեաններ նախ ականջ դնեն, ուսները թափ տան, յետոյ հիանան. տիկնայք սարսափեն, դողան հրճուանքից, եւ նորէն լսեն. յիմար տրիբուններ, որոնք, մգլահոտ ռամիկների հետ, ատում են փառքդ, ակամայ գոչեն. *«Փա՜ռք աստուածներին, որ հռոմն այսպիսի մի զինուոր ունի»:* Եւ սակայն եկար, որ այս խնջոյքից մէ՛կ պատառ ուտես արդէն կուշտուկուռ ճաշելուց յետոյ։

[Lartius enters, returning from pursuing the enemy.]

### LARTIUS.

Ահա, զօրավար, սա է նժոյգը, մենք ասպազէնն ենք։ Եթէ տեսնէիր։

### MARCIUS.

Թո՛ղ, խնդրեմ. Մայրս, որ արտօնուած է իր շառաւիղը փառաբանելու, երբ գովում է ինձ, նեղացնում է ինձ։ Ես նոյնն եմ արել, ինչ որ դուք, այն է՝ ինչ կարող էի. նոյն շարժառիթով, ինչ որ դուք, այն է՝ իմ երկրի համար. ո՛վ գործադրել է իր բարի կամքը, գործել է իմ չափ։

### COMINIUS.

Չպիտի ինքդ շիրիմը լինես քո արժանիքի, եւ պէտք է որ հռոմն իր ունեցածի արժէքն իմանայ. թաքուցում կը լինէր, վատ, քան գողութիւն, ոչ նուազ, քան թէ անուանարկութիւն, ծածկել գործերդ, լռութեան տալ այն, որին գովեստի գագաթն ու կատարն անհաս կը լինէր։ խնդրում եմ ուրեմն, ի վկայութիւն միայն թէ ի՛նչ ես, ոչ թէ իբրեւ վարձ քո արածների, մեր զօրքի առաջ լսիր ինձ, մարցիոս։

MARCIUS.
Ես վէրքեր ունիմ, որ կսկծում են՝ լսելով իրենց յիշատակումը։

COMINIUS.
Եթէ չլսեն, կը թարախոտուին ապերախտութեան։ Եւ մահով միայն կարող են գոցուիլ։ Բոլոր ձիանքից, որ մենք գրաւել ենք, շատ լաւեր եւ շատ, բոլոր գանձերից, որ ռազմի դաշտում եւ քաղաքի մէջ մեր ձեռքն են ընկել, մէկ տասանորդը քեզ ենք յատկացնում, որ պիտի հանուի ընդհանուր բաշխումն անելուց առաջ՝ ըստ քո հաճութեան։

MARCIUS.
Շնորհակալ եմ, ազնիւ զօրապետ, բայց ես չեմ կարող ստիպել սիրտս, որ կաշառք առնէ իբրեւ վարձ սրիս. ո՛չ, ես մերժում եմ եւ պահանջում եմ հաւասար բաժին այն ամէնքի հետ, որոնք եղել են սոսկ հանդիսատես։

EVERYONE.
[Shouting, tossing their caps.] Marcius! Marcius!

[Cominius and Lartius stand unarmed.]

MARCIUS.
Կտրուի ձայնը այդ գործիքների, որ անպատուում էք, երբ փող ու թմբուկ ռազմի դաշտի մէջ շողոքորթ դառնան, թող արքունիքներն ու քաղաքները կեղծերես գովքից շինուին ծայրեծայր. երբ որ մետաղը այնքան փափկանայ, որքան մետաքսը մակաբոյծների, թող այնուհետեւ ռազմիկի զրահը մետաքսից շինեն. բաւ է, ասում եմ։ Ի՞նչ, որովհետեւ արիւնած քիթս դեռ չեմ լուացել կամ թէ յաղթել եմ մի տկար խեղճի, ինչ որ սրանցից շատերն են արել այստեղ, աննկատ, փառաբանել ինձ առասպելական մեծարանքներով, որպէս թէ իրաւ ախորժ զգայի, որ փոքրութիւնս սնուէր գովքերով։

COMINIUS.
Դու խիստ համեստ ես. աւելի անգութ դէպի սեփական բարի համբաւդ, քան երախտագէտ, որ քեզ այսպէս ճիշտ նկարագրում ենք։ Թոյլ տուր մեզ խնդրեմ, երբ կատաղած ես դու ինքդ քո դէմ, որ քեզ կաշկանդենք ձեռնակապերով, ինչպէս ինքն իրեն վնասող մարդուն, եւ յետոյ քեզ հետ ապահով խօսենք։ Յայտ լինի ուրեմն ամբողջ աշխարհին, ինչպէս յայտ է մեզ, որ մարցիոսին է պատկանում պսակն այս պատերազմի, ի նշան որի` ընտիր նժոյգս` բանակին ծանօթ, տալիս եմ նրան` իր բոլոր սարքով եւ ասպազէնով, եւ այս րոպէից, կորիոլիի մօտ արածին համար կոչում եմ նրան, ի ձայն բանակի, կայիոս մարցիոս կորիոլանո՛ս։ Կրիր վեհօրէն այս մականունը մինչեւ յաւիտեան։

EVERYONE.
Կայիոս մարցիոս կորիոլանո՛ս։

CORIOLANUS.
Գնամ լուացուիմ, եւ երեսս մաքրուած լինի, նրան հողմի պէս ազատ կ`անէի։ Արձակիր, տիտոս։

LARTIUS.
Անունը՞, մարցիոս։

CORIOLANUS.
Իւպիտերը վկայ, միտքս չէ հիմա։ Յոգնած եմ. այո՛, ուշքս խոնջած է. գինի կա՞յ այստեղ։

COMINIUS.
Գնանք մեր վրանը։ Դէմքիդ արիւնը չորանում է. ե՛կ. խնամել է պէտք։

[They all exit.]

]|[

## ACT I. SCENE X.

The Camp of the Volsces. Tullus Aufidius enters, bloody, with three Soldiers,

### AUFIDIUS.

Առին քաղաքը։

### SOLDIER I.

Բայց լաւ պայմանով յետ կը տան կրկին։

### AUFIDIUS.

Պայմանո՞վ. ես հռոմայեցի կ՝ուզէի լինել, քանզի իբրեւ վոլսկ չեմ կարող երբեք լինել ինչ որ կամ. պայմա՞ն. ի՞նչ պայման կարող է յուսալ, ով որ անպայման անձնատուր լինի։ Հինգ անգամ, մարցիոս, կռուել եմ քո դէմ. եւ այդքան անգամ յաղթել ես դու ինձ. եւ եթէ, կարծեմ, մենք նոյնքան յաճախ, որքան ճաշում ենք, կռուի դուրս գայինք, դու նոյնքան յաճախ կը յաղթէիր ինձ։ Տարերքը վկա՛յ, եթէ ես նրան հանդիպեմ կրկին մօրուք մօրուքի, կամ ե՛ս նրանն եմ, եւ կամ նա՝ իմը։ Իմ մրցակցութիւնս ազնիւ չէ այլեւս, ինչպէս որ առաջ. ես յոյս ունէի ջախջախել նրան հաւասար ուժով՝ անխարդախ սուրս նրա սրի դէմ, հիմա կը մխեմ որեւէ ձեւով նրա կուրծքի մէջ։ Բարկութիւն կամ դաւ թող բռնեն նրան։

### SOLDIER I.

Նա դեւը ինքն է։

### AUFIDIUS.

Աւելի խիզախ, պակաս խորամանկ։ Արիութիւնս թունաւորւում է նրանից կրած նսեմացումով, եւ բնափոխւում նրա պատճառով։ Թէկուզ քնի մէջ, անզէն կամ հիւանդ, ո՛չ սրբատեղի, ոչ աղօթավայր, եւ ո՛չ կապիտոլ, ո՛չ աղօթքները քահանաների, ո՛չ զոհի ժամեր, թումբեր բոլորը կատաղութեան դէմ, պէտք չէ կանգնեցնեն իրենց բորբոսնած առանձնաշնորհին ու սովորոյթը իմ ոխի ընդդէմ դէպի մարցիոսը։ Ո՛ւր գտնեմ նրան, լինի իր տան մէջ, լինի իմ եղբօր պաշտպանութեան տակ, մինչեւ իսկ այնտեղ, հիւրընկալութեան կարգի

հակառակ, պէտք է ողողեմ իմ վայրագ ձեռքը նրա սրտի մէջ։ Գնա՛ շուտ քաղաք, իմացիր՝ ինչպէս պահպանուած է այն, եւ թէ ովքեր են, որ իբրեւ պատանդ հռոմ պիտի տարուին։

SOLDIER I.
Իսկ դուք չէ՞ք գալիս։

AUFIDIUS.
Ինձ սպասում են նոճեստանի մէջ ջաղացքից հարաւ. լո՛ւր բեր ինձ, խնդրեմ, թէ ի՛նչ քայլով է աշխարհին ընթանում, որպէսզի ես էլ նոյն քայլով անեմ ճամփորդութիւնս։

SOLDIER I.
Շատ բարի, տէր իմ։ [They exit.]

][][

ACT II. SCENE I.
Rome. Public Place. Menenius, Sicinius and Brutus enter.

MENENIUS.
Հաւհարցն ինձ ասաց, թէ այս գիշեր լուր ենք ստանալու։

BRUTUS.
Լա՞ւ, թէ՞ վատ։

MENENIUS.
Ոչ ժողովրդի սրտի ուզածը, որովհետեւ նա մարցիոսին չէ սիրում։

SICINIUS.
Բնութիւնը անասուններին անգամ սովորեցնում է ճանաչել իրենց բարեկամներին։

MENENIUS.
Խնդրեմ ասէք, գայլը ո՞ւմն է սիրում։

SICINIUS.
Գառան։

MENENIUS.
Այո՛, ուտելու համար. ինչպէս քաղցած պլեբէյեանները կ՚ուտէին ազնիւ մարցիոսին։

BRUTUS.
Իսկապէս մի գառն է նա, որ արջի պէս բռբռում է։

MENENIUS.
Իսկապէս մի արջ է նա, որ ապրում է գառան պէս։ Դուք ծեր մարդիկ էք, թոյլ տուէք ձեզնից մի բան հարցնեմ։

BOTH TRIBUNES.
Շատ լաւ, տէր։

MENENIUS.
Ի՞նչ թերութիւնով է մարցիոսը պակասաւոր, որ դուք նոյնը առատօրէն չունիք։

BRUTUS.
Ոչ մէկի մէջ պակասաւոր չէ նա, այլ բոլորից էլ մեծ պաշար ունի։

SICINIUS.
Յատկապէս գոռոզութիւնից։

BRUTUS.
Ամէնից շատ՝ պարծենկոտութիւնից։

MENENIUS.
Ձեր ասածը շատ տարօրինակ է. գիտէ՞ք արդեօք, թէ այս քաղաքում ինչպէս ենք դատում ձեզ երկուսիդ, ուզում եմ ասել մենք՝ աջակողմեաններս. գիտէ՞ք արդեօք։

BOTH TRIBUNES.
Ինչպէ՞ս էք դատում։

MENENIUS.
Քանի որ գոռոզութիւնից էք խօսում։. հոյ չէ՞ք բարկանայ։

BOTH TRIBUNES.
Ո՛չ, ո՛չ, տէր իմ, ո՛չ։

MENENIUS.
Ասենք, թէ բարկանաք էլ, մեծ բան չէ, որովհետեւ մի շատ փոքրիկ առիթ կարող է ձեզնից մի մեծ քանակ բարկութիւն գողանալ. բայց թողէք ձեր տրամադրութեան սանձը եւ բարկացէք, որքան ձեզ հաճոյ է. այսինքն, եթէ ձեզ համար հաճոյք է բարկանալը։ Մարցիոսին պախարակում էք, թէ նա գոռոզ է։

BRUTUS.
Մենք չենք միայն, որ այդպէս ենք անում։

MENENIUS.
Գիտեմ, քիչ բան կայ, որ մենակ կարողանաք անել. օգնականներ շատ ունիք. այլապէս ձեր արածները սաստիկ աննշան բաներ կը լինէին. ձեր

ընդունակութիւնները չափազանց երեխայական են, եւ քիչ բան կարող էք մենակ անել։ Գոռոզութիւնից էք խօսում, երանի թէ կարողանայիք ձեր աչքերը շուռ տալ դէպի ձեր կռնակի քսակը եւ մի ներքին քննութիւն կատարել ձեր բարի անձի վրայ. երանի թէ կարենայիք։

BOTH TRIBUNES.
Յետոյ ի՞նչ, պարոն։

MENENIUS.
Յետոյ այն, որ դուք կը տեսնէիք մի զոյգ անարժան, գոռոզ, կրքոտ, բարկացկոտ պաշտօնեաներ, այսինքն՝ յիմարներ, որպիսիները քիչ կան հռոմում։

SICINIUS.
Մենենիոս, քեզ էլ են ճանաչում։

MENENIUS.
Ես ճանաչուած եմ որպէս մի կատակասէր պատրիկեան. որպէս մի մարդ, որ սիրում է մի բաժակ տաք գինի, առանց որ մի կաթիլ տիբերիսից մէջը խառն լինի. մի մարդ, որի թերութիւնը այն է համարւում, որ առաջին գանգատուողի կողմն է բռնում. փութկոտ եւ բռնկուող չնչին բաների վրայ, որ աւելի շատ ընկեր է գիշերուայ յատակի հետ, քան թէ առաւօտուայ ճակատի հետ։ Ինչ որ մտածում եմ, այն եմ ասում, եւ չարախօսութիւնս սպառում եմ շնչիս մէջ։ Հանդիպելիս երկու այնպիսի պաշտօնակալների, ինչպէս դուք էք,- ձեզ հոյ չեմ կարող լիգուրգոսներ կոչել - եթէ մի խմիչք տաք ինձ, որ քիմքիս անախորժ լինի, դէմքս կը ծռմռեմ։ Չեմ կարող ասել՝ ձերդ մեծապատուութիւնները նիւթի վրայ լաւ ճառեցին, երբ ձեր արտասանած ամէն մի բառի մէջ աւանակութիւն կայ խառնուած. եւ, թէպէտ պէտք է համբերատար լինեմ այն մարդկանց հետ, որոնք ասում են, թէ դուք յարգելի եւ լուրջ մարդիկ էք, բայց եւ այնպէս նրանք մահացու սուտ են խօսում, երբ ասում են, թէ դուք լաւ երես ունիք։ Եթէ դուք այս բոլորը իմ միկրոկոսմի քարտէզի մէջ տեսնում էք, միթէ դա նշանակո՞ւմ է, որ ինձ լաւ են ճանաչում. ի՞նչ վատութիւն են կարող նկատել ձեր կարճատես աչքերը իմ բնաւորութեան մէջ, որ

ասում էք՝ ինձ լաւ են ճանաչում։

BRUTUS.
Լաւ է, լաւ, պարոն. մենք ձեզ լաւ ենք ճանաչում։

MENENIUS.
Դուք ո՛չ ինձ էք ճանաչում, ո՛չ ինքներդ ձեզ, ո՛չ էլ որեւէ բան։ Ձեր բոլոր փառասիրութիւնը այն է, որ խեղճ ողորմելիներ ձեր առաջ գլխարկ հանեն կամ ծունկ ծռեն։ Մի ամբողջ թանկագին կէս օր վատնում էք՝ մի նարինջ ծախող կնոջ եւ մի ծորակ ծախողի դատը վճռելու համար եւ յետոյ երեք պենսի վէճը յետաձգում էք մի երկրորդ նիստի։ Դատավարութեան ժամանակ երկու կողմերին լսելիս եթէ պատահմամբ փորացաւը ձեզ կսմթում է, միմոսների նման երես էք ծռմռում, պատերազմի դրօշակ էք պարզում համբերութեան դէմ եւ վէճը թողնում էք անվճիռ, աւելի եւս խճճուած ձեր քննութեան պատճառով. երկու կողմերի մէջ ձեր կայացրած հաշտութիւնը այն է լինում, որ դուք երկուսին էլ սրիկայ էք կոչում։ Մի զոյգ տարօրինակ արարածներ էք դուք։

BRUTUS.
Լաւ, լաւ. ամէնքը գիտեն, որ դուք աւելի լաւ զուարճախօս էք սեղանի վրայ, քան թէ ատեանական՝ կապիտոլում։

MENENIUS.
Մեր քահանաներն անգամ ծաղրածու կը դառնան եթէ ձեզ պէս ծաղրելի առարկաների հանդիպեն։ Ամենալաւ խօսքը, որ ձեր բերնից դուրս գայ, միրուքներիդ շարժուելուն չի արժի, իսկ միրուքներդ այնքան պատուաւոր գերեզմանի չեն արժի, որ մի հնակարկատի բարձը կամ թէ էշի փալանը լցնեն։ Եւ դեռ համարձակւում էք ասել, թէ Մարցիոս գոռոզ մարդ է, մի մարդ, որին որչափ էլ քիչ գին դնեն, էլի կ՝արժէ ձեր բոլոր պապերին՝ սկսած դեւկալիոնից, որոնց ամենալաւերը կարող են պատահմամբ ժառանգական դահիճներ եղած լինել։ Մնացէք բարով. ձեզ հետ աւելի երկար խօսակցելը ուղեղս կը վարակէ, քանի որ դուք անասուն պլեբէյեանների նախրեպաններն էք։

[As Brutus and Sicinius exit Volumnia, Virgilia and Valerian enter.]

MENENIUS.
Ինչպէ՞ս էք, իմ գեղեցիկ եւ ազնիւ տիկիններ. լուսինն ինքը եթէ երկրային լինէր, ձեզնից աւելի ազնիւ չէր լինի. դէպի ո՞ւր էք այդպէս շտապած ձեր աչքերին հետեւում։

VOLUMNIA.
Յարգելի մենենիոս, իմ տղաս՝ մարցիոսը, գալիս է. ի սէր իւնոյի, թոյլ տուր գնանք։

MENENIUS.
Ի՞նչ, մարցիոսը վերադառնո՞ւմ է։

VOLUMNIA.
Այո՛, ազնիւ մենենիոս, եւ մեծ յաջողութեամբ ու փառքով։

MENENIUS.
Բռնիր գլխարկս, ո՛վ իւպիտեր, եւ շնորհակալ եմ քեզանից։ Հո՛, մարցիոսը յետ է գալիս։

VIRGILIA and VALERIA.
Հաւատացէք, ճիշտ է։

VOLUMNIA.
Տեսէք, ահա նրա նամակը. մէկն էլ գրել է պետութեանը, մէկն էլ՝ իր կնոջը, եւ, կարծեմ, մէկ նամակ էլ ձեզ համար կայ մեր տունը։

MENENIUS.
Պէտք է այս գիշեր տունս էլ գինովութիւնից պատէպատ ընկնի. ինձ համար նամա՞կ։

VIRGILIA.
Այո՛, իսկապէս. նամակ կայ ձեզ համար, աչքովս տեսայ։

MENENIUS.
Ինձ համար նամա՛կ. դա ինձ եօթը տարի առողջութիւն կը պարգեւէ, եւ այդ բոլոր ժամանակում ես բժշկի քթին կը ծիծաղեմ։ Գալիենոսի ամէնէն գերագոյն դեղագիրը դրա մօտ պառաւի դեղ է եւ, այդ կենսապահիկի հետ համեմատած, ո՛չ աւելի գովական, քան թէ ձիադարմանի դեղը։ Եւ վէրք չէ՞ ստացել. սովոր էր միշտ վէրքով տուն գալ։

VIRGILIA.
Օ՛, ո՛չ, ո՛չ, ո՛չ։

VOLUMNIA.
Անպատճառ վիրաւորուած է. եւ փա՛ռք աստուածներին, որ այդպէս է։

MENENIUS.
Ես էլ փառք կը տամ, եթէ մեծ բան չլինի. յաղթութի՞ւն է բերում գրպանի մէջ. վէրքերը սազում են նրան։

VOLUMNIA.
Ճակատի՛ն, մենենիոս, այս երրորդ անգամն է, որ կաղնու պսակով տուն է գալիս։

MENENIUS.
Աւֆիդիոսին լաւ դաս տուած կը լինի, չէ՞։

VOLUMNIA.
Տիտոս լարտիոս գրում է, որ չափուել են իրարու հետ, բայց աւֆիդիոս ճողոպրել է։

MENENIUS.

Հազիւհազ խուսափած կը լինի, հաւատացէք։ Եթէ նրա առաջ կանգնած լինէր, ես այսպէս ֆիդիոսացած չէի լինի, թէկուզ կորիոլիի բոլոր սնդուկները միջի ոսկիներովն հանդերձ ինձ տուած լինէին։ Արդեօք սենատին տեղեկութիւն տրուա՞ծ է այս մասին։

VOLUMNIA.
Սիրելի տիկիններ, գնանք։ Այո՛, այո՛, այո՛, սենատը նամակ է ստացել զօրապետից, որի մէջ կռուի բոլոր փառքը նա որդուս է վերագրում։ Նա այս կռուի մէջ իր բոլոր նախկին գործերը կրկնապատիկ գերազանցել է։

VALERIA.
Ճիշտն ասած՝ հրաշքի պէս բաներ են պատմում նրանից։

MENENIUS.
Այո՛, հրաշքներ, հաւատացէք. եւ ոչ առանց նրա իսկական քաջագործութեան։

VIRGILIA.
Տան աստուածները, որ իսկական լինեն։

VOLUMNIA.
Իսկական, բա ի՞նչ։

MENENIUS.
Իսկակա՛ն. ես երդում կ՝անեմ, որ իսկական են։ Ո՞ր տեղից է վէրք ստացել։ [To the Tribunes, who come forward.] աստուած պահէ ձեզ, յարգելի պարոններ։ Մարցիոս տուն է գալիս. հիմա է՛լ աւելի տեղիք ունի խրոխտանալու։ Որտեղի՞ց է վէրք ստացել։

VALERIA.
Ուսից եւ ձախ բազուկից. մեծ-մեծ սպիներ կ՝ունենայ ժողովրդին ցոյց տալու, երբ իր դիրքին թեկնած է։ Տարկուինին յետ մղելիս եօթը վէրք էր ստացել իր մարմնի

վրայ։

MENENIUS.
Մէկը՝ վզին եւ երկուսը՝ ազդրերին. ինը, որքան գիտեմ։

VOLUMNIA.
Վերջին պատերազմից առաջ քսանհինգ վէրք ունէր։

MENENIUS.
Հիմա կը լինի քսանեօթը. ամէն մի պատառուածք մի թշնամու գերեզմանն էր։ ցնծութեան գոչեր եւ փողերի հնչիւն։ Լսեցէք, փողահարութի՜ւն։

VOLUMNIA.
Սրանք մարցիոսի առաջնորդներն են. նա իր առջեւից աղմուկ է տանում, եւ իր ետեւից արցունք է թողնում։ Մահն, այն մութ ոգին, նրա ջլապինդ բազուկի մէջն է, որ, երբ բարձրանում է եւ ցած է իջնում, դա մարդկանց վերջն է։

[Cominius and Titus Lartius; between them, Coriolanus, crowned with an oaken garland; with Captains and Soldiers and a Messenger.]

MESSENGER.
Իմացիր, ո՜վ հռոմ, որ կայիոս մարցիոս մէն-մենակ կռուեց կորիոլիի մէջ, ուր նա ստացաւ, մեծ համբաւի հետ, կայիոս մարցիոսին կցուած մականուն. այս անուններին կցուած է պատուով այժմ կորիոլա՛ն։ Բարի եկար հռոմ, մեծանուն կորիոլան։ [Exits.]

EVERYONE.
Բարի եկար հռոմ, մեծանուն կորիոլան։

CORIOLANUS.
Բաւ է, դա սիրտս վիրաւորում է։ Վերջ տուէք, խնդրեմ։

COMINIUS.
Տես, տէր իմ, մայրդ է։

CORIOLANUS.
Օ՛, գիտեմ, մայր իմ, ո՛ղջ աստուածներին աղերսել ես դու իմ բախտի համար։ [He kneels before his mother.]

VOLUMNIA.
Չէ՛, իմ քաջ զինուոր, վեր կաց։ Իմ քաղցրի՛կ մարցիոս, իմ ազնի՛ւ կայիոս, եւ նոր վաստակած քո պատուանունով։ Ինչպէ՞ս. կորիոլա՞ն պէտք է կանչեմ քեզ։ Բայց Օ՛ քո կինը։

CORIOLANUS.
Նազելի՛ մունջս, բարե՛ւ։ Ժպտայի՞ր պիտի, եթէ դագաղած ես տուն դառնայի, դու, որ լալիս ես յաղթանակիս վրայ։ Ա՛հ, իմ սիրելիս, այդպիսի աչքեր այրիներն ունին կորիոլիի մէջ եւ որդիներից զրկուած մայրերը։

MENENIUS.
Ե՛կ, աստուածները՛ թող պսակեն քեզ։

CORIOLANUS.
Կենդանի՞ ես դեռ։ [To Valeria.] Անուշիկ տիկին. ներեցէք խնդրեմ։

VOLUMNIA.
Ա՛հ, ո՞ր կողմ դառնամ։ Բարի գալուստ քեզ, եւ ձեզ, զօրապետ, եւ ձեզ ամէնքիդ։

MENENIUS.
Բի՛ւր բարի գալուստ, ես կարող եմ լալ, կարող եմ խնդալ. թեթեւ եմ եւ ծանր. բարի գալուստ ձեզ։ Անէ՛ծք այն մարդու սրտի արմատին, որ չուրախանայ, երբ որ քեզ տեսնէ։ Երեք հոգի էք, որոնց վրայ հռոմը պէտք է խենթանայ. եւ սակայն ասեմ,

հաւատքս վկա՛յ, այստեղ՝ մեր տանը, թթու խնձորի հին ծառեր ունինք, որոնք չեն ուզում պատուաստուիլ քեզմով։ Հոգ չէ, ռազմիկներ, ձեզ բարի գալուստ. մենք միշտ եղինջը եղինջ ենք կոչում եւ յիմարների թերութիւնները՝ յիմարութիւններ։

COMINIUS.
Յաւէ՛տ ճշմարիտ։

CORIOLANUS.
Մենենիոս, յաւէ՛տ։

EVERYONE.
Ճանապարհ բացէք, էհէ՛յ, եւ անցէք։

CORIOLANUS.
[To Volumnia and Virginia.] Ձեռքդ, եւ քոնը։ Նախքան թէ գլուխս մեր հարկի ներքեւ հովանաւորեմ, պէտք է այն բարի պատրիկեաններին այցելութիւն տամ, որոնք ոչ միայն սիրոյ ողջոյններ ուղարկեցին ինձ, այլեւ նրանց հետ՝ նոր-նոր պատիւներ։

VOLUMNIA.
Այնքան ապրեցի, որ բոլոր իղձերս եւ մտքիս բոլոր կառուցումները կատարուած տեսայ. մէկ բան է պակաս, եւ կասկած չունիմ, որ մեր հռոմն այդ էլ կը նուիրէ քեզ։

CORIOLANUS.
Իմացիր, մայր իմ. ես կը նախընտրեմ ի՛մ ուզած ձեւով ծառայել նրանց, քան նրանց ձեւով իշխել նրանց հետ։ Գնանք կապիտոլը։ Փողեր. հանդիսաւոր քայլով գնում են, ինչպէս առաջ։

[In pomp. All exit save Brutus and Sicinius.]

BRUTUS.
Ամէն լեզուներն նրանից են խօսում. աղօտ աչքերը ակնոց են կրում, որ տեսնեն

նրան. շատախօս դայակն այնքան նրա վրայ զրոյց է տալիս, որ խեղճ մանկիկը մարում է լացից. խոհարարուհին իր ամէնէն լաւ կտաւէ լաթը գնդասեղում է իր մրոտ վզին եւ բարձրանում է պատերի վրայ, որ նրան տեսնէ. խանութ, պատշգամբ, պատուհան լիքն են խեղդուելու չափ. այլազան տիպեր խուռն խմբուած են կտուրների վրայ կամ տանիքների եզերքին հեծած՝ նրան տեսնելու տենչով միացած։ Տուն նստող քուրմեր մխւում են բռնի հոծ ամբոխի մէջ, փնչալով ճգնում, որ մի տեղ գտնեն խուժանի կողքին. քօղասէր տիկնայք իրենց նրբօրէն ներկած թշերի իրար հակամարտ բոսորն ու ճերմակն աւար են տալիս ֆեբոսի տարփոտ համբոյրներին. մի իրարանցո՜ւմ, կարծես մի աստուած, նրա պաշտպանը, խորամանկօրէն ներս սահած լինի նրա մարդկային ունակութեանց մէջ եւ նրան սիրուն մի կեցուածք տուած։

SICINIUS.
Նա մէկ անգամից կոնսուլ կը դառնայ, ես երաշխաւո՜ր։

BRUTUS.
Եւ մեր պաշտօնը նրա ժամանակ կարող է քնել։

SICINIUS.
Բայց նա չէ կարող չափաւորութեամբ իր պատիւները կրել սկզբից, տանել մինչեւ վերջ. այլ պիտի կորցնէ, ինչ որ շահել է։

BRUTUS.
Մեր յոյսն էլ այդ է։

SICINIUS.
Հաստատ իմացիր, պլեբէյեանները, որոնց պաշտպանն ենք, իրենց հին ոխից, ամենափոքրիկ պատճառի համար, պիտի մոռանան այս պատիւները, որ նա շահել է. եւ կասկած չկայ բնաւ ինձ համար, որ հէնց նա ինքը իր գոռոզութեամբ տեղիք պիտի տայ։

BRUTUS.
Երդուեց իմ առաջ, որ, եթէ ուզէ նա կոնսուլ դառնալ, երբեք չի կանգնի հրապարակի մէջ, երբեք չի հագնի հեզամտութեան մաշուած հանդերձը, ոչ էլ, ցոյց տալով վէրքերն ամբոխին, ինչպէս որ կարգը, նրանց գարշահոտ շունչը կ՝աղերսէ։

SICINIUS.
Այո՛, այսպէս է։

BRUTUS.
Ճիշտ այդպէս խօսեց։ օ՛, նա պատրաստ է զրկուիլ այդ փառքից, եթէ չստանայ պատրիկեանների խնդրանքով միայն, եւ աւագանու բացարձակ կամքով։

SICINIUS.
Շատ կը ցանկայի, որ այդ մտքի մէջ նա անխախտ մնար, եւ գործադրէր այդ։

BRUTUS.
Հաւանական է, որ այդպէս կ՝անէ։

SICINIUS.
Եւ նրա համար առաջ կը գայ այն, ինչ պահանջում է մեր շահը, այն է՝ հաստատ կործանում։

BRUTUS.
Այո՛, կործանում կա՛մ նրա համար, կա՛մ մեր պաշտօնի։ Կարճ, ժողովրդին պէտք է թելադրենք, թէ ինչպէ՛ս նրանց ատել է նա միշտ, թէ ինչպէս նրանց ջորի կը շինէր իր իշխանութեան, կը լռեցնէր նրանց շահերի ջատագովներին, կը զրկէր բոլոր իրաւունքներից՝ հաշուելով նրանց, մարդկային ամէն ընդունակութեան եւ ձեռնարկի մէջ ոչնչով բարձր, եւ ոչ էլ յարմար աշխարհի համար, քան թէ ուղտերը պատերազմի մէջ, որոնք միմիայն կեր են ստանում, որ բեռ փոխադրեն, եւ խիստ հարուածներ, երբ ընկճւում են իրենց բեռան տակ։

SICINIUS.
Այդ թելադրանքը, ինչպէս ասում ես, մենք պիտի անենք, մի օր, երբ նրա խիստ բարձրաթռիչ գոռոզութիւնը գրգռէ մարդկանց, եւ այդպիսի օր պակաս չի լինի, երբ դրդեն նրան, ինչ որ, անկասկած, նոյնքան դիւրին է, որքան շներին գրգռել, քըս տալ ոչխարների վրայ. եւ դա կը լինի նրա կրակը, նրանց չոր յարդը բռնկցնելու, եւ նրանց բոցը կը խաւարեցնէ նրան յաւիտեան։

BRUTUS.
Ի՞նչ կայ։

MESSENGER.
[Entering.] Կանչում են ձեզ կապիտոլը։ խօսք կայ, թէ մարցիոս կոնսուլ կը դառնայ. ես տեսայ համրեր, որ խուժում էին նրան տեսնելու, կոյրեր՝ լսելու, տարէց տիրուհիք իրենց ձեռնոցը, տիկին ու նաժիշտ իրենց շղարշը եւ թաշկինակը նետում էին վրան, երբ նա անցնում էր. պատրիկեանները գլուխ էին տալիս որպէս իւպիտերի արձանի առաջ, եւ ժողովուրդը տարափ ու որոտ սարքել էր կարծես իր գլխարկներով եւ գոչիւններով։ Երբեք չեմ տեսել դրա նմանը։

BRUTUS.
Գնանք կապիտոլը, եւ տանենք մեզ հետ ունկեր ու աչքեր ներկայի համար, բայց արի սրտեր՝ գալիքի համար։

SICINIUS.
Գալիս եմ քեզ հետ։

[They all exit.]

][][

## ACT II. SCENE II.

Rome. capitol. Two Officers enter to lay down cushions.

OFFICER I.

Հայդէ՛, հայդէ՛, գալիս են. քանի՞ հոգի թեկնածու են կոնսուլութեան։

OFFICER II.

Ասում են՝ երեք հոգի. բայց ամէն մարդ կարծում է՝ կորիոլանն է շահելու։

OFFICER I.

Ահա մի քաջ մարդ, բայց սոսկալի գոռոզ է եւ հասարակ ժողովրդին չէ սիրում։

OFFICER II.

Շատ են եղել մեծ մարդիկ, որոնք ժողովրդին շողոքորթել են, բայց չեն սիրել. եւ շատեր կան, որոնց ժողովուրդը սիրել է՝ առանց իմանալու, թէ ինչո՛ւ. այնպէս որ, եթէ մարդիկ սիրում են, չգիտեն, թէ ինչու. եւ երբ ատում են, էլի չգիտեն, թէ ինչո՛ւ։ Ուրեմն, եթէ կորիոլանը հոգ չէ անում, թէ մարդիկ նրան սիրում են, թէ ատում, դա ցոյց է տալիս, որ նա մարդկանց հոգին լաւ է ճանաչում եւ շնորհիւ իր այդ ազնիւ անհոգութեան՝ թոյլ է տալիս, որ մարդիկ տեսնեն այդ։

OFFICER I.

Եթէ նա անտարբեր լինէր, թէ մարդիկ նրան սիրում են, թէ ոչ, պէտք է ինքն էլ անտարբեր կերպով տատանուէր նրանց լաւութիւն անելու կամ վնասելու մէջ. բայց նա աւելի մեծ եռանդով գրգռում է նրանց ատելութիւնը, քան թէ նրանք կարող են փոխադարձել. ոչ մի բան զանց չէ անում՝ ցոյց տալու համար, թէ ինքը նրանց հակառակորդն է։ Արդ, ձեւացնել, թէ ժողովրդի ոխն ու տհաճութիւնը նրան հաճելի է, նոյնքան վատ բան է, որքան հակառակը, այսինքն՝ ժողովրդին շողոքորթել՝ նրա սէրը ձեռք բերելու համար։

OFFICER II.

Նա իր հայրենիքին մեծ ծառայութիւններ է արել, եւ նրա բարձրացումը չէ

կատարուել այնպիսի դիւրին աստիճաններով, ինչպէս այն մարդկանցը, որոնք, ժողովրդի հետ փաղաքուշ եւ քաղաքավար լինելով, գլխարկ են հանել եւ առանց որեւէ մի գործ կատարելու՝ յարգանք ու համբաւ են շահել. իսկ նա այնպէս իր արժանիքները նրանց աչքն է խոթել եւ իր գործերը նրանց սրտերի մէջ տեղաւորել, որ եթէ նրանց լեզուները լուռ մնան, եւ չխոստովանեն նրա արածները, դա մի տեսակ ապերախտ անարդարութիւն կը լինէր. հակառակը պնդել մի չարութիւն կը լինէր, որ ինքը, իր սուտը հանելով, ամէն լսողից պարսաւ եւ նախատանք պիտի կորզէր։

OFFICER I.
Թողնենք. նա արժանաւոր մարդ է. ճամփայ տուր, գալիս են։

[Cominius the Consul enter with Lictors before him, followed by Menenius, Coriolanus, Senators, Sicinius and Brutus. The Senators take their places; the Tribunes sit by themselves.]

MENENIUS.
Վոլսկերի գործը վճռած լինելով, նաեւ որոշած՝ տիտոս լարտիոսին յետ կանչել հռոմ, մեզ մնում է այժմ, մեր գումարումի այս վերջին մասի գլխաւոր նիւթը, այն է՝ վարձատրել ծառայութիւնը նրա, որ այսպէս ախոյեան կանգնեց իր հայրենիքին։ Հաճեցէք ուրեմն, ո՛վ պատկառելի եւ լուրջ աւագներ, խնդրել, որ ներկայ մեր հիւպատոսը, վերջին զօրապետն այս ականաւոր յաղթութիւնների, պատմէ մեզ մի քիչ այն բարձր գործից, որ կատարել է մեր կայիոս մարկոս կորիոլանը, եւ այժմ եկել ենք թէ՛ շնորհակալիք յայտնելու նրան, թէ՛ մեծարելու իրեն արժանի փառքով ու պատուով։

SENATOR I.
Խօսեցէք խնդրեմ, ազնիւ կոմինիոս. բայց մի՛ կրճատէք՝ երկիւղ կրելով երկարութիւնից. խորհել տուէք մեզ, որ աւելի շուտ մեր պետութիւնը զուրկ է միջոցից փոխարինելու, քան թէ մենք՝ թերի՝ վարձատրութիւնը խոշորացնելու։ Տրիբուններին։ Արդ, ժողովրդի առաջաւորներ, նախ աղերսում ենք ձեր

բարեհաճոյ ունկնդրութիւնը, ապա, սիրալիր ձեր առաջարկը հասարակութեան, որ մեր վճռածին հաւանութիւն տայ։

SICINIUS.
Մենք հրաւիրուած ենք մի ուրախալի առաջարկի վրայ խորհրդակցելու, եւ մեր սրտերը տրամադրուած են պատիւ եւ դիրք տալ մեր գումարումի առարկայ անձին։

BRUTUS.
Ինչ որ մեծ սիրով պատրաստ ենք անել, եթէ նա ինքն էլ աւելի արժէք եւ յարգ ընծայէ մեր ժողովրդին, քան մինչեւ հիմա։

MENENIUS.
Դա դուրս է խնդրից. աւելի լաւ էր, որ լուռ մնայիք. ուզո՞ւմ էք արդեօք կոնսուլին լսել։

BRUTUS.
Ամենայն սիրով. բայց պէտք է ասեմ, որ իմ ազդ անելս այնքան անտեղի բան չէր, որքան ձեր պարսաւն իմ ազդի մասին։

MENENIUS.
Է՛հ, նա սիրում է ձեր ժողովրդին. բայց մի՛ պահանջէք, որ ամբոխի հետ մահճակից դառնայ։ Ազնիւ կոմինիոս, խօսիր, խնդրում եմ։

[Coriolanus stands and offers to exit.]

MENENIUS [cont.]
Ո՛չ, մի՛ հեռանայ։

SENATOR I.
Նստիր, կորիոլան, մի՛ շիկնիր լսել ազնիւ գործերդ։

CORIOLANUS.
Ներեցէք, տէր իմ. կը նախընտրէի բուժել վէրքերս, քան լսել՝ վէրքերս ինչպէս ստացայ։

BRUTUS.
Տէր իմ, յոյս ունիմ, որ խօսքերս չեն ձեզ հեռացնողը։

CORIOLANUS.
Ոչ, տէր իմ. սակայն, ես որ կանգնել եմ հարուածների դէմ, յաճախ բառերից փախուստ եմ տուել։ Դուք չգովեցիք, այդ պատճառով էլ չնեղացրիք ինձ։ Իսկ ժողովուրդը, սիրում եմ նրան, որչափ որ արժէ։

MENENIUS.
Խնդրում եմ, նստիր։

CORIOLANUS.
Լաւ էր, որ մի մարդ իմ գլուխըս քորեր արեգակի տակ, երբ որ հնչւում են կռուի փողերը, քան թէ ծոյլ նստեմ, լսեմ, թէ ինչպէս իմ ոչինչները հսկայացնում են։
[Exits.]

MENENIUS.
Դուք, ժողովրդի առաջաւորնե՛ր, ձեր բազմաբեղուն ճիժ ու պժերին ինչպէ՞ս է կարող նա շողոքորթել, երբ որ հազարից միայն մէկն է լաւ. տեսնո՞ւմ էք հիմա, որ աւելի շուտ նա պատուի համար կը տուժէ բոլոր իր անդամները, քան մէ՛կ ականջը՝ իր արածները լսելու համար։ խօսիր, կոմինիոս։

COMINIUS.
Աւա՛ղ, իմ ձայնը անզօր կը լինի. կորիոլանի կատարածները լաւ չէ թոյլ պատմել. արիութիւնը, ասում են, մեծն է յատկութիւնների, եւ ամէնից շատ նա է բարձրացնում իր ունեցողին. եթէ այդպէս է, նա, որի վրայ ուզում եմ խօսել, իր հատը չունի ամբողջ աշխարհում։ Տասնվեց տարին հազիւ բոլորած՝ երբ

տարկուինոսը քայլեց հռոմի վրայ, նա պատերազմեց, ամէնքից անցաւ. այն ժամանակի մեր դիկտատորը, որին յիշում եմ ամէն գովեստով, տեսաւ, թէ ինչպէս այն ամազոնի կզակով տղան քշեց իր առաջ մազոտ պռուկներ։ Ոտքերը ցցեց մի հռովմայեցի ընկած զինուորի երկու կողմի վրայ եւ հէնց կոնսուլի աչքերի առաջ սպանեց երեք յարձակուողներին. յետոյ նա հասաւ տարկուինի դիմաց եւ նրան զարկեց ու ծունկի բերեց. եւ իր այն օրուայ քաջութիւններով, նա, որ բեմի վրայ շատ լաւ կարող էր կնոջ դեր խաղալ, դուրս եկաւ օրուայ մեծագոյն մարդը. եւ, իբրեւ տրիտուր, ճակատը կապուեց կաղնեայ պսակով. նոր աշակերտը հազիւ թէ այսպէս առնութեան հասած՝ նա ծովի նման յորդեց, մեծացաւ, եւ տասնոյոթը ճակատամարտի խռիւների մէջ այն օրից ի վեր խլել է պսակն ամէն սրերից։ Վերջին կռուի մէջ՝ կորիոլիի մօտ եւ քաղաքի մէջ, թոյլ տուէք ասեմ, չեմ կարող նրան ճիշտ նկարագրել. նա փախչողների առաջը կտրեց եւ սքանչելի իր օրինակով ազդեց երկչոտին, որ սարսափելին խաղալիք շինէ. ինչպէս կնիւններն առագաստաւար մի նաւի առաջ, այնպէս մարդիկը գլուխ էին ծռում եւ թափւում էին նրա սայրի տակ. իսկ նրա սուրը՝ մահուան կնիքը, ուր որ դիպչում էր, այնտեղ դրոշմում էր. գագաթից կրունկ արիւնառուշտ էակ, որի ամէն մի շարժման համաչափ մեռնողի ճիչեր արձակւում էին։ Մենակ ներս մտաւ քաղաքի դռնից եւ ներկեց նրան անխուսափելի օրհասականով. առանց օգնութեան ելաւ այնտեղից՝ եւ յանկարծակի զօրաւիգ առած՝ զարկեց կորիոլին չար աստղի նման։ Ամէն բան հիմա նրա ձեռքին է. բայց՝ կամաց-կամաց կռուի ժխորը սկսաւ ծակել արթուն ականջը. եւ նրա ոգին կրկնապատկուելով կազդուրեց կրկին, ինչ որ յոգնած էր նրա մարմնի մէջ, եւ եկաւ հասաւ ճակատամարտը, ուր թունդ ծխալէն՝ գրոհ էր տալիս կեանքերի վրայ, որպէս թէ անվերջ ջարդի օր լինէր, եւ մինչեւ որ մենք թէ՛ ռազմի դաշտում, թէ՛ քաղաքի մէջ յաղթող դուրս չեկանք, նա դադար չառաւ, որ շունչ տայ կուրծքին։

MENENIUS.
Սքանչելի՜ մարդ։

SENATOR I.
Լիուլի արժան այն պատիւներին, որ մտադիր ենք շնորհել նրան։

COMINIUS.

Մեր աւարները դէն հրեց ոտքով. նայեց թանկագին բաների վրայ այնպէս, որ կարծես նրանք աշխարհի կեղտը լինէին. նրա փափագներն աւելի քիչ են, քան թշուառութիւնն ինքը պիտի տար. իր արածները վարձատրում է նա սոսկ իր գործերով, գոհ է՝ ծախսելով իր ժամանակը՝ ծախսելու համար։

MENENIUS.

Սաստիկ ազնիւ է. ներս կանչենք նրան։

SENATOR I.

Կանչեցէք նրան։

[Coriolanus re-enters.]

MENENIUS.

Կորիոլան, սենատն արժան է դատում քեզ կոնսուլ կարգել։

CORIOLANUS.

Ծառայութիւնս եւ կեանքս էլ ընդմիշտ պարտ եմ սենատին։

MENENIUS.

Մնում է հիմա, որ գնաս, խօսես ժողովրդի հետ։

CORIOLANUS.

Խնդրում եմ թոյլ տաք, որ ես զանց անեմ այդ սովորոյթը։ Ո՛չ, ես չեմ կարող վերարկու հագնել, մերկ գլխով կանգնել, հայցել ձայն տան ինձ՝ ի սէր վէրքերիս, հաճեցէք թոյլ տալ, որ ես զանց անեմ այս արարմունքը։

SICINIUS.

Ո՛չ, ժողովուրդը պէտք է անպատճառ իր ձայնն ունենայ, էս ծէսից մի կէտ չի

պակասեցնի։

MENENIUS.
Մի փորձիր նրանց. խնդրում եմ գնա, յարմարուիր ծէսին. ստացիր պատիւդ, ինչպէս արել են քո նախորդները, իր ձեւ ու ծէսին։

CORIOLANUS.
Ո՛չ, այդպիսի դեր կ՝ամաչեմ խաղալ։ Եւ ժողովրդից պէտք է յետ առնուլ այդ իրաւունքը։

BRUTUS.
[To Sicinius.] Լաւ ուշ դարձրի՞ր։

CORIOLANUS.
Գնալ պարծենալ։ *«Այսպէս եմ արել, այնպէս եմ արել»։* Ցուցադրել նրանց անցաւ սպիներ, որ պէտք էր ծածկել, որպէս թէ միայն նրա՛ համար եմ վէրքեր ստացել, որ նրանց ձայնը դրանով վարձե՛մ։

MENENIUS.
Բա՛հ, մի՛ յամառուիր։ Տրիբուններ, մենք ձեզ յանձնարարում ենք, որ ժողովուրդին յայտնէք մեր կամքը, եւ մեր նորընտիր ազնիւ կոնսուլին բարեմաղթում ենք ամէն փառք, պատիւ եւ ուրախութիւն։

SENATOR I.
կորիոլանին ամէն փառք, պատիւ եւ ուրախութի՛ւն։

[All exit save Brutus and Sicinius.]

BRUTUS.
Աhա թէ ինչպէս միտք ունի վարուել ժողովրդի հետ։

SICINIUS.
Թող մարդիկ տեսնեն նրա դիտումը. նա ժողովուրդին այնպէս կը խնդրէ, որպէս թէ ինքը արհամարհում է իր աղերսածը, եթէ ամբոխից պիտի ստանայ։

BRUTUS.
Ե՛կ, ժողովուրդին տեղեկութիւն տանք այս անցուդարձից. գիտեմ, որ նրանք հրապարակի մէջ սպասում են մեզ։ [They exit.]

][][

ACT II. SCENE III.
Rome. Forum. Several Citizens enter.

CITIZEN I.
Մէկ անգամ ասեմ, եթէ նա մեր ձայնը խնդրէ, չենք կարող մերժել։

CITIZEN II.
Կարող ենք, եթէ ուզենք։

CITIZEN IV.
Մենք կարողութիւն ունինք մերժելու, բայց դա մի կարողութիւն է, որ մենք կարողութիւն չունինք անելու. որովհետեւ, եթէ նա իր վէրքերը մեզ ցոյց տայ եւ իր արածները մեզ պատմէ, պէտք է մենք էլ լեզուներս դնենք նրա վէրքերի մէջ եւ վէրքերի կողմից խօսենք. ուրեմն, եթէ նա իր ազնիւ գործերը պատմէ մեզ, մենք էլ պէտք է մեր ազնիւ գնահատումը յայտնենք։ Ապերախտութիւնը հրէշաւոր բան է, եւ երբ բազմութիւնը ապերախտ է, դա նշանակում է, որ բազմութիւնը հրէշ է դառնում. մենք էլ, այդ բազմութեան անդամները լինելով, կը լինենք հրէշաւոր անդամներ։

CITIZEN I.

Եւ մեզ հրէշաւոր կարծել տալու համար շատ ջանք պէտք չէ. որովհետեւ այն ժամանակ, երբ մենք ցորենի համար ապստամբել էինք, նա էր, որ առանց քաշուելու, բազմագլխանի ամբոխ կոչեց մեզ։

CITIZEN IV.

Շատերն են մեզ այդպէս կոչել, ոչ թէ որովհետեւ մեր մէջ ոմանց գլուխը թուխ է, ոմանցը՝ սեւ, ոմանցը՝ շէկ, ոմանցը՝ ճաղատ, այլ որովհետեւ մեր ամէն մէկի խելքը առանձին գոյն ունի. եւ ճիշտն ասած՝ եթէ բոլորիս տարբեր խելքերը միեւնոյն գանգից դուրս գային, նրանք կը թռչէին դէպի արեւելք, արեւմուտք, հիւսիս ու հարաւ. եւ որքան էլ որ համաձայն լինէին միեւնոյն ուղղութիւնը բռնելու, էլի կը թռչէին դէպի կողմնացոյցի բոլոր կողմերը։

CITIZEN II.

Այդպէ՞ս ես կարծում. իմ խելքը ո՞ր կողմ կը թռչէր, քո խելքով։

CITIZEN IV.

Քո խելքը այնպէս շուտ պոկ չի գայ իր տեղից, ինչպէս ուրիշներինը. շատ պինդ է պրկացրած փայտէ կոճղի մէջ, բայց եթէ ազատ լինէր, դէպի հարաւ կը թռչէր, անպատճառ։

CITIZEN II.

Ինչո՞ւ այդ կողմ։

CITIZEN IV.

Որպէսզի խառնուէր մառախուղին. այնտեղ նրա երեք քառորդը կը լուծուէր գարշահոտ գոլորշիների մէջ, իսկ մէկ չորրորդը խղճահարուելով յետ կը գար քեզ օգնելու, որ մի կին գտնես։

CITIZEN II.

Կատակը քո բերնից պակաս չի. ասա՛յ, ասա՛։

CITIZEN IV.
Վճռե՞լ էք ամէնքդ ձայն տալ նրան. բայց փոյթ չէ, մեծամասնութիւնը կը յաղթէ։ Ասում եմ, եթէ նա ժողովուրդի կողմը հակուած լինէր, աւելի լաւ մարդ չէր գտնուի աշխարհում։ Գալիս է կորիոլան՝ խոնարհութեան պատմուճանը հագած, մենենիոսի հետ։ Ահա գալիս է՝ խոնարհութեան պատմուճանը հագած. մտիկ տուէք նրա ձեւերին։ Չպէտք է ամէնքս մէկտեղ կանգնենք, այլ գնանք, մօտիցն անց կենանք մէկ-մէկ, երկու-երկու, երեք-երեք։ Պէտք է մեր ամէն մէկից առանձին-առանձին խնդրէ. այդ կերպով մեզնից ամէն մէկը առանձին պատիւ կը ստանայ, երբ որ մեր լեզուով մեր ձայնը տանք. դե՛հ, հետեւեցէք ինձ, եւ ես ձեզ կ՝ասեմ, թէ ինչպէս պէտք է գնաք, նրա մօտից անց կենաք։

EVERYONE.
Շատ լաւ, շատ լաւ։ Քաղաքացիք։

[As they exit Menenius and Coriolanus enter.]

MENENIUS.
Ո՛չ, դու սխալ ես. չե՞ս լսել միթէ, որ շատ մեծ մարդիկ նոյն բանն են արել։

CORIOLANUS.
Ի՞նչ պէտք է ասեմ։ *«Խնդրում եմ, պարոն»,* թո՛ւհ, ես չեմ կարող, չեմ կարող լեզուս այս յանգին բերել. նայեցէք, պարոն, տեսէք վէրքերս. որ հայրենիքի ծառայութեան մէջ ստացել եմ ես, երբ որ շատերը ձեր եղբայրներից վայ էին կանչում եւ փախչում էին հէնց մեր սեփական թմբուկի ձայնից։

MENENIUS.
Վա՛յ ինձ. աստուածնե՛ր. չպէտք է խօսես այդ բանի վրայ. այլ պէտք է խնդրես, որ քեզ միտ բերեն։

CORIOLANUS.
Մի՞տ բերեն, դժո՛խք. երանի թէ ինձ մտքից հանէին, ինչպէս մեր բարի քահանաների սին քարոզները։

MENENIUS.
Այդպէս ամէն բան փչացնելու ես. ես չեմ գայ քեզ հետ. բայց, աղաչում եմ, վայելուչ կերպով խօսիր նրանց հետ։ [Exits.]

CORIOLANUS.
Ասա թող գնան, երես լուանան եւ ատամները թող մաքուր պահեն։

[Two Citizens enter.]

CORIOLANUS [cont.]
[To self.] Ահա մեզ մի զոյգ։

[Citizen III enters.]

CORIOLANUS [cont.]
[Aloud.] Դու գիտես, պարոն, այստեղ կանգնելուս պատճառը։

CITIZEN I.
Գիտենք, պարոն. ասա՛ մեզ, ի՞նչն է քեզ ստիպել այստեղ կանգնելու։

CORIOLANUS.
Իմ սեփական արժանիքը։

CITIZEN II.
Ձեր սեփական արժանիքը՛։

CORIOLANUS.
Այո՛, բայց ոչ իմ սեփական փափագը։

CITIZEN I.
Ինչպէ՞ս ոչ ձեր սեփական փափագը։

CORIOLANUS.
Ո՛չ, պարոն. երբեք իմ փափագը չէ եղել խեղճ մարդկանց նեղութիւն տալ՝ մի բան խնդրելու համար։

CITIZEN I.
Բայց պէտք է իմանաս, որ եթէ քեզ մի բան տանք, այն յոյսով է՝ քո միջոցով մի բան ստանանք։

CORIOLANUS.
Դէ լաւ. ասացէք խնդրեմ, կոնսուլութեան ձեր գինն ի՞նչ է։

CITIZEN I.
Գինն այն է, որ քաղցր լեզուով խնդրէք։

CORIOLANUS.
Քա՞ղցր լեզուով։ խնդրում եմ, պարոն, շնորհ արէք ինձ. վէրքեր ունիմ ձեզ ցոյց տալու, որ կարող էք տեսնել առանձին։ Ձեր բարի ձայնը, պարոն, ի՞նչ էք ասում։

CITIZEN II.
Կը տանք ձեզ, ազնիւ տէր։

CORIOLANUS.
Առուտուրն արինք, պարոն։ ընդամէնը երկու պատուական ձայն մուրացինք։ Ձեր ողորմութիւնը ստացայ։ Մնաք բարով։

CITIZEN I.
Բայց մի քիչ տարօրինակ ձեւ է այս։

CITIZEN II.
Եթէ պէտք լինէր նորէն տալ։ Բայց հոգ չէ։

[Citizen IV enters.]

CORIOLANUS.
Խնդրում եմ ձեզնից, եթէ ձեր ձայների եղանակին յարմար է գալիս, որ ես կոնսուլ դառնամ. ահա հագել եմ սովորական պատմուճանը։

CITIZEN IV.
Դուք ազնիւ կերպով ծառայել էք ձեր հայրենիքին եւ ազնիւ կերպով չէք ծառայել։

CORIOLANUS.
Ձեր հանելուկը՞։

CITIZEN IV.
Նրա թշնամիների հանդէպ մտրակ էք եղել եւ բարեկամների հանդէպ՝ խարազան. երբեք չէք սիրել հասարակ ժողովրդին։

CORIOLANUS.
Ուրեմն պէտք է է՛լ աւելի առաքինի համարէք ինձ, որ հասարակ չեմ եղել իմ սիրոյ մէջ։ Ես յօժար եմ, պարոն, շողոքորթել երդուեալ եղբօրս, այն է՝ ժողովրդին, աւելի թանկ գնահատելու համար. մի պայման է դա, որ նրանք մեղմ են համարում. եւ քանի որ նրանց ընտրողական իմաստութիւնը այնքան է, որ գլխարկս նրանց աւելի հաճելի է, քան սիրտս, ես էլ ուզում եմ վարժութիւն անել փաղաքշօրէն գլուխ տալու եւ կեղծաւորաբար գլխարկ հանելու նրանց առաջ. այսինքն՝ պարոն, ուզում եմ խուժանավարի գործի դրած աչքակապութիւնը կեղծել եւ ցանկացողներին առատօրէն հայթայթել այդ։ Ուրեմն աղաչում եմ, թոյլ տուէք, որ

ես կոնսուլ դառնամ։

CITIZEN II.
Յոյս ունիմ, որ մեզ բարեկամ կը դառնաք, եւ այդ պատճառով մեր բոլոր սրտով ձեզ ձայն ենք տալիս։

CITIZEN IV.
Շատ վէրքեր էք ստացել ձեր հայրենիքի համար։

CORIOLANUS.
Չեմ ուզում ձեր լսածը հաստատել՝ վէրքերս ցոյց տալով։ Ձեր ձայնը շատ բարձր պիտի գնահատեմ եւ չեմ ուզում սրանից աւելի նեղութիւն տալ ձեզ։

ALL THE CITIZENS.
Աստուածները բախտաւոր անեն ձեզ, տէր իմ, սրտանց մաղթում ենք։

CORIOLANUS.
Անուշի՜կ ձայներ. աւելի լաւ է մեռնել սովամահ, քան վարձը մուրալ մեր կատարածի, ինչո՞ւ պէտք է գամ այս բուրդ թոգայով եւ կանգնեմ այստեղ՝ ամէն հանդիպած յոբից ու դիքից իրենց անօգուտ վկայութիւնը մուրալու համար. սովորութիւնն է ինձ հարկադրողը. բայց եթէ մենք միշտ ամէն բանի մէջ այնպէս վարուէինք, ինչպէս պահանջէր սովորութիւնը, դարերի փոշին կը մնար յաւէտ առանց սրբուելու, եւ լեռնակարկառ մոլորութիւնը այնքան կը դիզուէր, որ ճշմարտութիւնն անհաս կը լինէր նրա գագաթին։ Ո՜չ, աւելի շուտ, քան թէ այդպիսի խեղկատակ դառնամ, թող այդ պատիւը եւ բարձր պաշտօնն այն մարդուն տրուին, որ այսպէս կ՝անէ։ Կէսն աւարտել եմ, մէկ մասը տարել, միւսն էլ կը տանեմ։ Գալիս են երեք նոր քաղաքացիք։ Ահա նոր ձայներ։ Տուէք ձեր ձայնը, ձեր ձայնի համար միայն կռուել եմ, ձեր ձայնի համար անքուն մնացել, ձեր ձայնի համար քսան եւ քանի վէրք եմ ստացել, տասնեւութն անգամ ճակատամարտ եմ տեսել եւ լսել. ձեր ձայնի համար բաներ եմ արել, քիչ կամ աւել. ձեր ձայնը, խնդրեմ, այո՛, ես կոնսուլ ուզում եմ դառնալ։

CITIZEN IV.
Այս մարդը ազնիւ գործ է կատարել, եւ պարկեշտ մարդը չէ կարող նրան իր ձայնը մերժել։

CITIZEN IV.
Ուրեմն թող կոնսուլ դառնայ։ Աստուածները բախտաւոր անեն նրան եւ ժողովրդի լաւ բարեկամը դարձնեն։

ALL THE CITIZENS.
Ամէն, ամէն։ Աստուած պահէ ձեզ, ազնիւ կոնսուլ։ [They exit.]

CORIOLANUS.
Պատուական ձայներ։

[Menenius, Brutus and Sicinius enter once more.]

MENENIUS.
Դուք լրացրել էք պայմանուած ժամը, եւ տրիբունները ընծայում են ձեզ հանրութեան ձայնը. մնում է միայն, որ պաշտօնական յատկանիշներով շուտ գաք սենատը։

CORIOLANUS.
Վերջացա՞ւ։

SICINIUS.
Այո՛, խնդրանքի սովորութիւնը դուք կատարեցիք, եւ ժողովուրդը ընդունում է ձեզ եւ հրաւիրուած է շուտ գումարուելու՝ ձեր ընտրութիւնը վաւերացնելու։

CORIOLANUS.
Ո՞ւր, սենատի՞ մէջ։

SICINIUS.
Այո՛, կորիոլան։

CORIOLANUS.
Կարո՞ղ եմ փոխել այս հանդերձները։

SICINIUS.
Կարող էք, տէր իմ։

CORIOLANUS.
Իսկոյն կը փոխեմ եւ ճանաչելով ինքս ինձ կրկին՝ կը գամ սենատը։

MENENIUS.
Կ՝ընկերանամ ձեզ. գալի՞ս էք դուք էլ։

BRUTUS.
Մենք ժողովրդին կը սպասենք այստեղ։

SICINIUS.
Գնացէք բարով։ Կորիոլան եւ մենենիոս ուզածն ստացաւ. եւ նայուածքներից թւում է, կարծեմ, որ սիրտն ուրախ է։

BRUTUS.
Ի՜նչ գոռոզ սրտով ձգած էր վրան իր խոնարհ քուրձը։ Լաւ, ժողովրդին արձակելո՞ւ ես։

[The Citizens re-enter.]

SICINIUS.
Ի՞նչ կայ, վարպետնե՛ր, ընտրեցի՞ք մարդուն։

CITIZEN I.
Մեր ձայնը տուինք։

BRUTUS.
Աղօթենք, որ նա արժանի լինի ձեր համակրանքին։

CITIZEN II.
Ամէ՜ն, ազնիւ տէր։ Բայց իմ անարժան հասկացողութեամբ՝ նա մեզ ծաղրում էր, երբ որ խնդրում էր, որ ձայն տանք նրան։

CITIZEN IV.
Հաստա՛տ, ուղղակի ծաղրում էր նա մեզ։

CITIZEN I.
Ո՛չ, ո՛չ. դա նրա խօսելու ձեւն է։ Նա մեզ չէր ծաղրում։

CITIZEN II.
Մեր մէջ մարդ չկայ, բացի քեզանից, որ չասէ, թէ նա արհամարհանքով վարւում էր մեզ հետ։ Պէտք է ցոյց տար մեզ իր արժանիքի հաւատչեաները, իր երկրի համար ստացած վէրքերն։

SICINIUS.
Ցոյց տուաւ, անշուշտ։

ALL THE CITIZENS.
Ոչ, մարդ չէ տեսել։

CITIZEN IV.
Նա միայն ասաց։ *«Ես վէրքեր ունիմ, որ ձեզ առանձին կարող եմ ցոյց տալ»* եւ գլխարկն այսպէս գոռոզ ճօճելով՝ ասաց։ *«Ուզում եմ ես կոնսուլ կարգուիլ. հին*

*սովորոյթը չէ թոյլատրում այդ առանց ձեր ձայնին. ուրեմն տուէք ինձ ձեր ձայները»։* Եւ երբ մենք տուինք, ահա ի՛նչ ասաց։ *«Շնորհակալ եմ ձայներիդ համար. շնորհակալ եմ, անուշիկ ձայներ. դէ լաւ, հիմա որ ձայներդ տուիք, գործ չունիմ ձեզ հետ»։* Հեգնութիւն չէ՞ր այս։

SICINIUS.
Կա՛մ անգէտ էիք, որ չտեսաք այդ, կամ թէ տեսնելով, այնքան միամիտ՝ երեխայի պէս, որ այնուհանդերձ ձայն տուիք նրան։

BRUTUS.
Չկարողացա՞ք դուք նրան ասել, ինչպէս այդ բանը ձեզ դաս էր տրուած, որ երբ նա անզօր, աննշան մարդ էր եւ այս պետութեան մի չնչին ծառայ, ձեր թշնամին էր, խօսում էր ընդդէմ ձեր արտօնութեանց եւ այն կարգերի, որ ձեռք էր բերել հանրապետութեան վարչամարմնի մէջ, եւ այժմ, հասնելով զօրաւոր դիրքի եւ իշխանութեան, եթէ նա դարձեալ չարակամօրէն մնայ թշնամին պլեբէյեանների, չէ՞ որ ձայներդ ձեր գլխին անէծք կարող են դառնալ։ Պէտք է դուք նրան ասած լինէիք, ինչպէս որ նրա ազնիւ գործերը արժան են լրիւ այն բարձր դիրքին, որին ձգտում է, այնպէս էլ նրա բարի բնութիւնը պէտք է յիշէր ձեզ ձեր ձայնի համար եւ նրա նախկին ատելութիւնը փոխարկէր սիրոյ՝ կանգնելով որպէս ձեզ սիրող իշխան։

SICINIUS.
Ձեր այդպէս ասելն, ինչպէս ձեզ կանխաւ խորհուրդ էր տրուած, փորձի կ՝ենթարկէր նրա բուն ոգին եւ յայտնի կ՝անէր նրա միտումը. կա՛մ դա նրանից մի բարեացակամ խոստում կը կորզէր, որ կարող էիք պէտք եղած դէպքում յիշեցնել նրան, կա՛մ դա կը գրգռէր նրա բարկացկոտ բնաւորութիւնը, որ չէ հանդուրժում որեւէ կապի, որ նրան կապէ որեւէ բանի. եւ այսպէս նրան կատաղեցնելով՝ նրա բարկութեան հայթայթած առթից դուք կ՝օգտուէիք, եւ նա կը մնար զուրկ ընտրութիւնից։

BRUTUS.

Չնկատեցի՞ք, թէ նա ինչպիսի արհամարհանքով ձեր ձայնն էր խնդրում, մինչդեռ պէտք ունէր ձեր սիրելիութեան, կարծում էք նրա արհամարհանքը ձեզ չի՞ տրորի, երբ ջախջախելու միջոց ունենայ։ Մարդ չկա՞ր ձեր մէջ, որ իր մարմնի մէջ ոգի ունենար. նրա՞ համար էր ձեզ լեզու տրուած, որ դատողութեան ուղիղութեան դէմ աղաղակ հանէր։

SICINIUS.

Չէ՞ որ եղել են ուրիշ խնդրողներ, որոնց մերժել էք, ինչո՞ւ էք նրա՛ն, որ ձեզ չէ խնդրում, այլ ծաղրում միայն, ձեր միշտ յարգելի ձայները տուել։

CITIZEN IV.

Դեռ չէ հաստատուել. մենք դեռ կարող ենք չընդունել նրան։

CITIZEN II.

Եւ կը բացասենք։ Ես՝ հինգ հարիւր ձայն կարող եմ գտնել այդ հնչիւնի տէր։

CITIZEN I.

Ես երկու այդքան, բարեկամներն էլ դեռ վրան բարդած։

BRUTUS.

Հեռացէք իսկոյն եւ ասէք ձեր այդ բարեկամներին, թէ մի այնպիսի կոնսուլ էք ընտրել, որ պիտի խլէ իրաւունքներդ. եւ աւելի ձայն չպիտի տայ ձեզ, քան թէ շներին, որոնց պահում են հաչալու համար, բայց աւելի շատ ծեծում են նրանց, երբ որ հաչում են։

SICINIUS.

Թող շուտ ժողովուին, եւ աւելի լաւ դատողութիւնով ջնջեցէք անգէտ այդ ընտրութիւնը։ շեշտեցէք նրա գոռոզութիւնը եւ այն հին ոխը, որ ունի ձեր դէմ. եւ մի՛ մոռանաք, թէ նա ինչպիսի՛ արհամարհանքով ձգել էր վրան խոնարհ հանդերձը. ինչպէ՛ս խնդրելիս քամահրում էր ձեզ. եւ թէ ձեր սէրը, յիշելով նրա

ծառայութիւնը, կորզեց ձեզանից նրա վարմունքի ճիշտ ըմբռնումը, որ նա հեգնօրէն եւ անլրջօրէն ղեկավարում էր ձեր դէմ ունեցած իր հին քէնի վրայ։

BRUTUS.
Բոլոր յանցանքը դրէք մեր վրայ, ձեր տրիբունների. ասացէք, թէ մենք, ամէն նկատում անտես անելով, հարկադրեցինք ձեզ որ նրան ընտրէք։

SICINIUS.
Ասացէք, թէ սոսկ մեր հրամանի վրայ ընտրել էք նրան եւ ոչ թէ դրդուած ձեր անկեղծ սէրից, եւ թէ ձեր միտքը, ուզելով անել, ինչ պէտք է անել, աւելի, քան թէ ինչ որ կ՝ուզէիք, ընտրել տուաւ ձեզ ներհակ ձեր կամքին։ Մե՛ր վրայ դրէք բոլոր սխալը։

BRUTUS.
Մի՛ խնայէք մեզ։ Ասացէք, թէ ձեզ դասախօսեցինք, թէ որքա՜ն փոքրից ծառայել է նա իր հայրենիքին եւ որքա՜ն երկար շարունակել է, թէ ի՜նչ տոհմից է, մարցիանների այն ազնիւ տնից. որից սերել է անկոս մարցիոսը՝ նումայի թոռնը, դստեր զաւակը, որ իբրեւ յաջորդ մեծ հոստիլիոսի այս երկրի վրայ թագաւոր եղաւ. նոյն տնից էին պուբլիոս եւ քուինտոս, որ ամենալաւ ջուրը բերեց մեզ խողովակներով. եւ թէ ցենզորիոս, որ այդպէս կոչուեց եւ ազնուօրէն, երբ երկրորդ անգամ հանրութեան կողմից ցենզոր ընտրուեց, նրա մեծ պապն էր։

SICINIUS.
Այսպիսի ծագում ունեցող մէկին, որ իր սեփական անձով էլ նոյնպէս արժանացել է բարձր աստիճանի, յանձնարարեցինք ձեր յիշողութեան. սակայն, ասացէք. դուք նկատեցիք՝ կշռելով նրա ներկայ վարմունքը իր անցեալի հետ, որ նա ձեր անխախտ թշնամին է դեռ, եւ յետ էք կոչում ձեր սաստիկ հապճեպ հաւանութիւնը։

BRUTUS.
Ասացէք՝ երբեք դուք չէիք ընտրի։ Միշտ այդ կրկնեցէք եթէ ոչ միայն մեր ստիպանքով. եւ իսկոյն եւեթ, երբ համախմբած լինէք ձեր թիւը, գնացէք կապիտոլ։

ALL THE CITIZENS.
Լաւ, այդպէս կ՝անենք. գրեթէ ամէնքը զղջացել են խիստ այդ ընտրութեան վրայ։
[They exit.]

BRUTUS.
Հիմա թող գործեն. լաւ է այս պայքարն այժմ փորձարկել, քան թէ սպասել, առանց կասկածի, աւելի մեծին։ Երբ, ինչպէս նրա բնաւորութիւնն է, նրանց մերժումից սաստիկ կատաղի՝ մենք պէտք է դիտենք եւ օգուտ քաղենք նրա բարկութեան յարմար առիթից։

SICINIUS.
Գնանք կապիտոլ. մենք ժողովրդի հոսանքից առաջ այնտեղ կը լինենք, պէտք է այս բանը, որ մե՛նք ենք սարքել, ինքնաբեր թուայ, ինչպէս է՛ մասամբ։

[They exit as well.]

][][

ACT III. SCENE I.
Rome. Street. Coriolanus enters with Menenius, Cominius, Titus Lartius, Senators and Patricians.

CORIOLANUS.
Ուրեմն աւֆիդիոս նոր զօրք է կազմել։

LARTIUS.
Այո՛, ազնիւ տէր. դա եղաւ պատճառ, որ աւելի շուտ հաշտութեան եկանք։

CORIOLANUS.
Ուրեմն վոլսկերը նոյն դիրքի մէջ են, ինչ առաջ էին, պատրաստ, երբ դրդէ յարմար առիթը մեր դէմ քայլելու։

COMINIUS.
Նրանք, տէր կոնսուլ, այնքան մաշուած են, որ մեր տարիքում դժուար թէ մէկ էլ վոլսկ դրօշակ տեսնենք։

CORIOLANUS.
Եւ նրան տեսա՞ք։

LARTIUS.
Ապահովութեան խոստում առնելով՝ եկաւ նա ինձ մօտ եւ լուտանք թափեց այն վոլսկերի դէմ, որոնք քաղաքը այնքան վատօրէն անձնատուր արին։ Հիմա հեռացած քաշուած է անտիում։

CORIOLANUS.
Խօսե՞ց իմ մասին։

LARTIUS.
Խօսեց։

CORIOLANUS.
Ինչպէ՞ս, ի՞նչ։

LARTIUS.
Թէ քանի անգամ չափուել է ձեզ հետ՝ սուր սուրի ընդդէմ. թէ աշխարհի մէջ ամէն բանից շատ նա ձեզ է ատում, թէ նա պատրաստ է իր բոլոր գոյքը զոհել անհատոյց՝ սոսկ ձեր յաղթողը կոչուելու համար։

CORIOLANUS.
Անտիո՞մ է ապրում։

LARTIUS.
Այո՛, անտիոմ է։

CORIOLANUS.
Շատ կ՚ուզենայի մի պատճառ գտնել՝ այնտեղ նրա հետ չափուելու համար եւ նրա ոխին լիուլի չափով ոխ հատուցելու։ Բարով էք եկել։

[Sicinius and Brutus enter.]

CORIOLANUS [cont.]
Նայեցէք, ահա ժողովրդական մեր տրիբունները, ընդհանուր բերնի այս լեզուները. ես նրանց սաստիկ արհամարհում եմ. այնքան են ուռել իրենց պաշտօնով, որ մի պատրիկեան չէ կարող տանել։

SICINIUS.
Առաջ մի՛ գնա։

CORIOLANUS.
Հը՞, ի՞նչ ասացիր։

BRUTUS.
Վտանգաւոր է առաջ գնալը. մի՛ առաջ գնա։

CORIOLANUS.
Ի՞նչ է պատճառը այս փոփոխութեան։

MENENIUS.
Ի՞նչ է պատահել։

COMINIUS.
Չէ՞ որ նա արդէն կոնսուլ է կարգուել թէ՛ ժողովրդից եւ թէ՛ սենատից։

BRUTUS.
Ոչ, կոմինիո՛ս, ոչ։

CORIOLANUS.
Մանուկների՞ց եմ ես ձայն ստացել։

SENATOR I.
Տրիբուննե՛ր, անցէք, ճանապարհ տուէք. պէտք է նա իսկոյն հրապարակ գնայ։

BRUTUS.
Բայց ժողովուրդը յուզուած է նրա դէմ։

SICINIUS.
Կա՛նգ առ. եթէ ոչ՝ բախում կը լինի։

CORIOLANUS.
Ձեր նախի՞րն է այս։ Արժա՞ն են սրանք ձայն ունենալու, մարդիկ, որ հիմա ձեզ ձայն են տալիս եւ իսկոյն յետոյ խօսքերն ուրանում։ Ձեր պաշտօնն ի՞նչ է։ Քանի որ դուք

էք նրանց բերանը, ինչո՞ւ ուրեմն չէք կառավարում եւ ատամները։ Չէ՞ որ հէնց դուք էք նրանց գրգռել։

MENENIUS.
Հանդարտ կաց, հանդարտ։

CORIOLANUS.
Դիտմամբ է արուած, սարքուած դաւ է՝ պատրիկեանների կամքը կոտրելու. տարէք այդ բանը եւ կենակցեցէք այդ կերպ մարդկանց հետ, որոնք չեն կարող ո՛չ կառավարել, ո՛չ կառավարուիլ։

BRUTUS.
Դաւ մի՛ կոչիր այդ. մարդիկ գոռում են, թէ ծաղրում էիք եւ վերջին անգամ, երբ նրանց ձրի ցորեն էր տրւում, դուք նրանց սաստիկ կշտամբում էիք եւ ժողովրդի խնդրարկուներին խայտառակ անում՝ նրանց կոչելով երեսապաշտներ եւ շողոքորթներ եւ թշնամիներ պատրիկեանների։

CORIOLANUS.
Բայց դա ամէնքին ծանօթ է վաղուց։

BRUTUS.
Ո՛չ, ոչ ամէնքին։

CORIOLANUS.
Դո՞ւք էք ուրեմն նրանց նոր յայտնել։

BRUTUS.
Ե՞ս նրանց յայտնել։

COMINIUS.
Ձեզնից հեռու չէ այդպիսի բանը։

BRUTUS.
Մեզնից հեռու չէ՞։ Յամենայն դէպս, աւելի լաւ է, քան ձեր արածը։

CORIOLANUS.
Ինչո՞ւ ուրեմն ես կոնսուլ դառնամ։ Այն ամպը վկա՛յ, թող ես էլ ձեր չափ անարժան լինեմ, եւ ինձ էլ ձեզ պէս տրիբուն կարգեցէք։

SICINIUS.
Շատ էք ցոյց տալիս այնպիսի բաներ, որ ժողովրդին կատաղեցնում են. եթէ ուզում էք հասնել այն տեղին, որին ձգտում էք, աւելի քաղցր մի եղանակով պէտք է հարցնէք ձեր ճանապարհը, որից շեղուել էք. եթէ ոչ, երբեք կոնսուլ չէք լինի. ոչ էլ կոնսուլի լծակից տրիբուն։

MENENIUS.
Լաւ, հանդարտ խօսենք։

COMINIUS.
Դուք ժողովրդին մոլորեցրել էք, դրդել էք նրան։ Այս խարդաւանքը վայել չէ հռոմին, ոչ էլ կորիոլան արժանաւոր է այս անարգ խութին՝ նենգօրէն դրուած իր արժանիքի հարթ ճամփի վրայ։

CORIOLANUS.
Ցորենի՞ մասին ուզում էք խօսել. ահա ասածս. պատրաստ եմ կրկնել։

MENENIUS.
Ոչ այժմ, ո՛չ, ո՛չ։

SENATOR I.
Ոչ այս բորբոքուած վիճակում, տէր իմ։

CORIOLANUS.

Հէնց այժմ կ՝ասեմ, կեանքովս երդո՜ւմ. աւելի ազնիւ բարեկամներից ներում եմ խնդրում. գալով յեղյեղուկ, հոտած ամբոխին՝ թող նայեն իմ մէջ, ինչպէս մի անշողոմ մի հայելու մէջ, եւ տեսնեն այնտեղ իրենց երեսը, ասում եմ կրկին, շոյելով նրանց՝ մենք մշակում ենք մեր սենատի դէմ ապստամբութեան, անպատկառութեան, խռովութեան սերմը, որ մենք ինքներս, արտը հերկելով, ցանել, ցրուել ենք՝ խառնելով մեզ հետ, մեզ՝ պատուաճանաչ ընտիրների հետ, որոնց պակաս չէ առաքինութիւն, այո՜, ոչ էլ ուժ, բացի նրանից, որ մենք տուել ենք մուրացկաններին։

MENENIUS.

Լաւ է, լաւ. բաւ է։

SENATOR I.

Մի՜ խօսէք. բաւ է, աղաչում ենք ձեզ։

CORIOLANUS.

Ինչպէ՞ս թէ բաւ է։ Ոչ, ինչպէս որ ես արիւն եմ թափել իմ երկրի համար՝ չվախենալով արտաքին ուժից, այնպէս էլ թոքերս մինչեւ քայքայուին, թող բառեր դարբնեն բորոտութեան դէմ, որից թէպէտեւ ուզում ենք խորշել, որ չվարակուինք, բայց վարակուելու ճամփան ենք բռնում։

BRUTUS.

Այնպէս ես խօսում ժողովրդի վրայ, որպէս թէ ինքդ մի աստուած էիր՝ նրանց պատժելու, ոչ թէ նրանց պէս մի տկար էակ։

SICINIUS.

Լաւ է՝ ժողովուրդն այս բանն իմանայ։

MENENIUS.

Ի՞նչ, ի՞նչ իմանայ, սրա բարկութիւնը՞։

CORIOLANUS.
Ի՞նչ, բարկութի՞ւնս. կէսգիշերային խորունկ քնի պէս հանդարտ էլ լինեմ, իւպիտեր վկա՛յ, իմ գաղափարը հէնց այս կը լինի։

SICINIUS.
Այդ գաղափարը պէտք է, իբրեւ թոյն, իր տեղը կենայ, ոչ թէ վարակէ ուրիշներին էլ։

CORIOLANUS.
Իր տեղը՛ կենայ. լսո՞ւմ էք սրան՝ փոքրիկ ձկների այս տրիտոնին. տեսնո՞ւմ էք սրա բացարձակ։ «*Պէտք է»-ն*։

COMINIUS.
Անկանոն խօսք էր։

CORIOLANUS.
Պէ՛տք է։ Ո՛վ բարի, բայց խիստ անխոհեմ ազնուականներ, խիստ պատկառելի, բայց անհեռատես դուք սենատորներ, ինչո՞ւ հիդրային այսպէս թոյլ տուիք, որ ինքն իր համար պաշտօնեայ ընտրէ, եւ նա յանդգնի, կտրուկ։ «*Պէտք է»-ով* թէպէտեւ ինքը հրէշի շառաչուն փողահարն է սոսկ ասել, թէ ինքը ուզում է շուռ տալ ձեր առուի ջուրը մի խրամի մէջ եւ ձեր ջրանցքը սեփականացնել։ Եթէ նա այնպէս hզօրացել է, ձեր անգիտութեան յանցանքն է միայն։ Եթէ hզօր չէ, լաւ է՝ զարթեցնէք ձեր վտանգալից գթածութիւնը. եթէ գիտուն էք, մի՛ վարուէք, ինչպէս հասարակ խենթեր. եթէ ոչ, բարձեր տուէք ամբոխին. դուք պլեբէյեան էք, եթէ ռամիկներ սենատոր դառնան՝ ոչնչով պակաս, եթէ ձեր ձայներն, իրար խառնուելով, մեծագոյն մասի ճաշակը տիրէ։ Իրե՛նք են ընտրում իրենց պաշտօնեան այնպիսի մէկին, որ հակադրում է ժողովրդական իր խիզախ։ «*Պէտք է»-ն* աւելի խոհուն ժողովի դէմ, քան երբեւիցէ գումարուած լինի յունաստանի մէջ։ Երկինքը վկայ, դա կոնսուլներին ստորացնում է. տանջւում է hոգիս, երբ մտածում եմ, թէ երբ կան երկու իշխանութիւններ, ոչ մին գերագոյն, ի՛նչ շուտ կարող է խառնակութիւնը նրանց մէջ մտնել եւ մէկը բռնել միւսի միջոցով։

COMINIUS.
Գնանք հրապարակ։

CORIOLANUS.
Ովքեր էլ լինեն, որ խորհուրդ տուին մեր ամբարների ցորենը նրանց ձրի բաժանել, ինչպէս երբեմն սովորութիւն էր յունաստանի մէջ։

MENENIUS.
Լաւ, լաւ. թողէք այդ։

CORIOLANUS.
Թէեւ ժողովուրդն այնտեղ աւելի բացարձակ տէր էր, ասում են, նրանք, որ խորհուրդ տուին այդպէս անելու, նրա՛նք սնուցին ըմբոստութիւնը, նրա՛նք փորեցին պետութեան հիմքը։

BRUTUS.
Եւ ժողովուրդը այսպէս խօսողին դեռ իր ձայնը տայ։

CORIOLANUS.
Ես փաստեր կը տամ աւելի յարգի, քան նրանց ձայնը. նրանք լաւ գիտեն, մեր ցորեն տալը վարձատրութիւն չէր, գիտեն, որ իրենք ոչինչ չեն արել վարձի արժանի։ Երբ պատերազմի կոչ եղաւ նրանց, այն էլ՝ մի դէպքում, երբ սուր էր դրուած պետութեան պորտին, նրանք չուզեցին քաղաքից դուրս գալ։ Արժա՞ն է այս կերպ ծառայութիւնը ձրի ցորենի. պատերազմի մէջ նրանց ապստամբ խռովութիւնները, որոնց մէջ սաստիկ քաջ հանդիսացան, չեն կարող խօսել ի նպաստ նրանց։ Այն մեղադրանքը, որ սենատի դէմ արել են յաճախ, զուրկ ամէն հիմքից, շարժառիթը չէ՞ր մեր անբռնադատ պարգեւատրութեան։ Լաւ, ի՞նչ ուրեմն. այս բազմապատիկ խելապատակը ինչպէ՞ս ըմբռնէ սենատի բարի վերաբերմունքը. նրանց արարքից կարող ենք դատել թէ ի՛նչ են ասում։ *«Մենք պահանջեցի՛նք, մենք ենք մեծ թիւը, եւ երկիւղից է, որ նրանք տուին մեր*

*պահանջները»*։ Եւ մենք այս կերպով ստորացնում ենք մեր դիրքի բնոյթը եւ տեղիք տալիս ռամիկ ամբոխին, որ մեր խնամքը երկիւղ անուանէ. եւ, ժամանակով, սա կը խորտակէ սենատի դուռը, եւ ագռաւներին ներս կը մտցնէ. որ արծիւներին կտուցով զարկեն։

MENENIUS.
Լաւ, բաւ է, բաւ է։

BRUTUS.
Ոչ միայն բաւ է, այլ խիստ չափազանց։

CORIOLANUS.
Ոչ, աւելի ա՛ռ. այն, որով մի մարդ երդուել է կարող, թէ՛ աստուածային եւ թէ՛ մարդկային, թող հաստատէ այս, իմ վերջին խօսքը։ Այս երկուացած իշխանութիւնը, որի մէջ մէկը արհամարհում է, եւ իրաւացի, եւ միւսն՝ անարգում առանց պատճառի, երբ տոհմ եւ տիտղոս, եւ իմաստութիւն չեն կարող վճռել եթէ ոչ տգէտ հասարակութեան այո կամ ոչով, պիտի ստիպուի իրական պէտքեր աչքաթող անել եւ զիջել հողդողդ սիևութիւնների. ամէն պատշաճ գործ այսպէս ճնշուելով՝ ոչինչ չի արւում, որ պատշաճ լինի։ Աղաչում եմ ձեզ։ Ձեզ, որ ուզում էք խոհամիտ լինել, բայց ոչ վեհերոտ, ձեզ, որ սիրում էք պետութեան կայուն, հիմնաւոր մասը, աւելի, քան թէ երկիւղ էք կրում փոփոխութիւնից, որ ազնիւ կեանքը գերադասում էք մի երկար կեանքից եւ խիզախ դեղով փորձում էք փրկել մի հիւանդ մարմին, որ առանց նրան դատապարտուած է աներկբայ մահուան, պոկ տուէք տակից բազմաձայն լեզուն. մի թոյլ տաք նրանց լիզել այն քաղցրը, որ թոյն է նրանց։ Ձեր անպատւումը հաշմացնում է դատողութիւնը, եւ պետութիւնը զրկում է վայել դատողութիւնից, կարողութիւնից՝ այն լաւ անելու, որ կամենում է, շնորհիւ այն վատի, որ նրա գլխին իշխող է դարձել։

BRUTUS.
Ջէ՞ որ շա՛տ խօսեց։

SICINIUS.
Այո՛, եւ խօսեց իբրեւ դաւաճան, եւ պիտի քաւէ իբրեւ դաւաճան։

CORIOLANUS.
Դո՛ւ, թշուառակա՛ն, արհամարհանքը ոտնահարէ քեզ. ի՞նչ անէ ամբոխն այս ճաղատ գլխով տրիբունների հետ, որոնց յենուելով՝ ըմբոստանում է աւելի բարձր ատեանի հանդէպ. ապստամբական մի շփոթի մէջ, երբ ոչ պատշաճը, այլ միայն պէտքը օրէնք էր դարձել, մարդիկ ընտրեցին այդ տրիբուններին. մի աւելի լաւ ժամում թող ասենք, պէտք է պատշաճը պատշաճ համարուի եւ նրանց ուժը պէտք է նետուի հողի մէջ։

BRUTUS.
Տեսէք, աշկարայ դաւաճանութիւն։

SICINIUS.
Սա կոնսո՞ւլ, երբե՛ք։

BRUTUS.
Էդիլնե՛ր, Էդիլներ։

[Aediles enter.]

BRUTUS [cont.]
Բռնի՛ր, այդ մարդուն։

SICINIUS.
Գնա՛, ժողովրդին կանչիր։

[Aediles exit.]

SICINIUS [cont.]
ես ինքս նրա անունով ձերբակալում եմ քեզ՝ իբրեւ մատնիչ եւ յեղաշրջող, իբրեւ թշնամի հանրապետութեան։ Հրամայում եմ քեզ, հնազանդիր եւ ե՛կ պատասխան տալու։

CORIOLANUS.
Դուրս, ծերուկ նոխազ։

ALL THE SENATORS.
Մենք նրա համար երաշխաւոր ենք։

COMINIUS.
Յետ քաշիր ձեռքդ, ալեւոր պարոն։

CORIOLANUS.
Դուրս կորիր, փտա՛ծ, թէ ոչ ոսկրներդ այնպէս թափ կը տամ, որ հագուստներիդ միջից դուրս թափուին։

SICINIUS.
Օգնութեան հասէք, դուք, քաղաքացիք։

[Mob of Citizens enter with the Aediles.]

MENENIUS.
Երկու կողմից էլ աւելի յարգանք։

SICINIUS.
Ահա այն մարդը, որ կամենում է զրկել ձեզ բոլոր կարողութիւնից։

BRUTUS.
Ձերբակալեցէք դրան, էդիլներ։

ALL THE CITIZENS.
Անկցի՛ դա, անկցի՛։

ALL THE SENATORS.
ի զէՆ, ի զէՆ, ի զէՆ։

[They all bustle about Coriolanus.]

SENATOR I.
Տրիբուննե՛ր, պատրիկեաննե՛ր, քաղաքացի՛ք, հէ՛յ, հո՛յ, սիցինիո՛ս, բրուտո՛ս, կորիոլաՆ, քաղաքացի՛ք, հանդա՛րտ, հանդա՛րտ, կեցէ՛ք, հանդա՛րտ։

MENENIUS.
Ի՞Նչ է լինելու. շունչս կտրուեց. աշխարհանցում է. չեմ կարող խօսել. տրիբուններ, լսէք, կորիոլաՆ, հանդա՛րտ, սիցինիոս, խօսիր։

SICINIUS.
Լսէք, ժողովուրդ. հանդա՛րտ, լռութի՛ւն։

CITIZEN I.
Լաւ, մեր տրիբունին լսենք. լռութիւն, խօսիր, խօսիր, խօսիր։

SICINIUS.
Ձեր ազատութիւնը կորցնելու վրայ էք. մարցիոսն ուզում է խլել ձեզանից իրաւունքներդ. հէնց նոյն մարցիոսը, որին քիչ առաջ կոնսուլ ընտրեցիք։

MENENIUS.
Ամօ՛թ, թո՛ւհ, ամօ՛թ. դա բորբոքել է, ոչ թէ հանգցնել։

SENATOR I.
Քաղաքը քանդել, բոլորը հողին հաւասարցնել է։

SICINIUS.
Ի՞նչ է քաղաքը, եթէ ոչ՝ միայն ժողովուրդն ինքը։

CITIZEN II.
Ճիշտ է, քաղաքը ժողովուրդն ինքն է։

BRUTUS.
Եւ մենք ամէնքի համաձայնութեամբ նշանակուած ենք այդ ժողովրդի պաշտօնեաները։

CITIZEN II.
Եւ այդպէս մնացէք։

MENENIUS.
Հաւանական է, որ պիտի մնաք։

COMINIUS.
Հէնց այդ է ձեւը քաղաքը հողին հաւասարցնելու, տանիքը մինչեւ հիմքը բերելու, եւ ինչ որ կանգուն ու կարգաւոր է, աւերակների շեղջակոյտի տակ ընդմիշտ թաղելու։

SICINIUS.
Մահուան է արժա՛ն։

BRUTUS.
Կա՛մ կանգնած մնանք մեր պաշտօնի վրայ, կա՛մ թող կորցնենք։ Ուրեմն յանուն այն ժողովրդի, որի զօրութեամբ մենք ընտրուած ենք իբրեւ պաշտօնեայ, յայտարարում ենք, մարցիոսն արժան է անյապաղ մահուան։

SICINIUS.
Բռնեցէք դրան եւ իսկոյն տարէք տարպեյեան ժայռը եւ այն բարձունքից գահավիժեցէք դէպի կործանում։

BRUTUS.
Ձերբակալեցէք նրան, էդիլներ։

CITIZEN II.
Անձնատո՛ւր, մարցիոս, անձնատուր եղիր։

MENENIUS.
Լսեցէք մէ՛կ բառ. խնդրեմ, տրիբուններ, մէ՛կ բառ ասեմ ձեզ։

AEDILE.
Լռութի՛ւն, լռութի՛ւն։

MENENIUS.
Այն եղէք, ինչ որ ուզում էք թուալ. անկեղծ բարեկամ ձեր հայրենիքի, մեղմութեամբ արէք, ինչ որ ուզում էք բռնի վերուղղել։

BRUTUS.
Արդ, պաղ միջոցներն, որոնք խելացի ճարեր են թւում, խիստ թունաւոր են, երբ որ սաստիկ է հիւանդութիւնը։ Բռնեցէք դրան եւ տարէք ժայռը։ Կորիոլան սուրը դուրս է քաշում։

CORIOLANUS.
Ո՛չ, ես ուզում եմ հէնց այստեղ մեռնել. ձեր մէջ կան ոմանք, որ ինձ տեսել են պատերազմելիս. եկէք, փորձեցէք ձեր անձի վրայ, ինչ որ տեսել էք։

MENENIUS.
Ցած դիր այդ սուրը։ Տրիբուններ, խնդրեմ, հեռացէք մի քիչ։

BRUTUS.
Բռնեցէք դրան։

MENENIUS.
Եկէք մարցիոսի օգնութեան, եկէք, ազնուականներ. օգնեցէք նրան, ծեր ու պատանի։

CITIZEN IV.
Անկցի՛ դա, անկցի՛։ խառնակութեան մէջ տրիբունները, էդիլները եւ ժողովուրդը պարտութիւն են կրում։

MENENIUS.
գնա՛ քո տունը, գնա՛, հեռացիր. թէ ոչ, ամէն բան կ՚ոչնչանայ։

SENATOR II.
Գնա՛։

CORIOLANUS.
Պինդ կեցէք. մենք այստեղ նոյնքան բարեկամ ունինք, որքան թշնամիք։

MENENIUS.
Պէ՞տք է միթէ բանն այդտեղ հասցնել։

SENATOR I.
Քա՛ւ լիցի. խնդրեմ, ազնիւ բարեկամ, գնա քո տունը. մե՛զ այս բարդութիւնը։

MENENIUS.
Դա մի այնպիսի խոց է մեր վրայ, որ ինքդ երբեք չես կարող բուժել. գնա՛, խնդրում

եմ։

COMINIUS.
Ե՛կ մեզ հետ, տէր իմ։

CORIOLANUS.
Ա՛խ, բարբարոսներ լինէին դրանք, ինչպէս են, թէեւ հռոմի մէջ ցկնած. ոչ հռոմայեցիք, ինչպէս չեն, թէեւ հէնց կապիտոլի գաւթի մէջ վիժուած։

MENENIUS.
Գնա՛, հեռացիր. ազնիւ զայրոյթդ մի՛ յանձնիր լեզուիդ. մէկ օրուայ պարտքը միւսն է վճարում։

CORIOLANUS.
Հարթ դաշտի վրայ սրանց քառասունին ես կը յաղթէի։

MENENIUS.
Ես ինքս էլ մի զոյգ նրանց լաւերից իմ վրայ կ՝առնէի, այո՛, այն երկու տրիբուններին։

COMINIUS.
Բայց հիմա ամէն թուաբանութեան հաշուից անցնում է, եւ քաջութիւնը խելագարութիւն կոչում են մարդիկ, երբ նա կանգնում է փլչող շէնքի դէմ։ Գնա՛ այստեղից նախքան խուժանի վերադառնալը, որի ամեհի կատաղութիւնը, առաջը կտրած ջրերի նման ճեղքում է թումբը եւ նուաճում է այն, որից ինքը պիտի նուաճուէր։

MENENIUS.
Գնա՛, խնդրում եմ. իսկ ես կը փորձեմ, թէ իմ ծեր խելքը դեռ արժէք ունի՞ անխելքների մօտ. այս պատառուածքը որեւէ գոյնի լաթով անպատճառ պէտք է կարկատել։

COMINIUS.
Չէ՛, եկէք գնանք։ Կորիոլան, կոմինիոս եւ ուրիշներ որ ինքդ երբեք չես կարող բուժել. գնա՛, խնդրում եմ։

CORIOLANUS.
Ա՛խ, բարբարոսներ լինէին դրանք, ինչպէս են, թէեւ հռոմի մէջ ցկնած. ոչ հռոմայեցիք, ինչպէս չեն, թէեւ հէնց կապիտոլի գաւթի մէջ վիժուած։

MENENIUS.
Գնա՛, հեռացիր. ազնիւ զայրոյթդ մի՛ յանձնիր լեզուիդ. մէկ օրուայ պարտքը միւսն է վճարում։

CORIOLANUS.
Հարթ դաշտի վրայ սրանց քառասունին ես կը յաղթէի։

MENENIUS.
Ես ինքս էլ մի զոյգ նրանց լաւերից իմ վրայ կ՝առնէի, այո՛, այն երկու տրիբուններին։

COMINIUS.
Բայց հիմա ամէն թուաբանութեան հաշուից անցնում է, եւ քաջութիւնը խելագարութիւն կոչում են մարդիկ, երբ նա կանգնում է փլչող շէնքի դէմ։ Գնա՛ այստեղից նախքան խուժանի վերադառնալը, որի ամեհի կատաղութիւնը, առաջը կտրած ջրերի նման ճեղքում է թումբը եւ նուաճում է այն, որից ինքը պիտի նուաճուէր։

MENENIUS.
Գնա՛, խնդրում եմ. իսկ ես կը փորձեմ, թէ իմ ծեր խելքը դեռ արժէք ունի՞ անխելքների մօտ. այս պատառուածքը որեւէ գոյնի լաթով անպատճառ պէտք է կարկատել։

COMINIUS.
Չէ՛, եկէք գնանք։ [They exit.]

CITIZEN III.
Այս մարդն իր բախտը իր ձեռքով աւրեց։

MENENIUS.
Նրա բնութիւնն անչա՛փ ազնիւ է աշխարհի համար. նեպտունին անգամ չէր շողոքորթի, որ եռաժանին պարգեւ ստանար. ոչ էլ դիոսին՝ նրա որոտի զօրութեան համար. սիրտն ու բերանը նրա մէջ նոյնն են. կուրծքի դարբնածը պէտք է որ լեզուն իսկոյն արձակէ. երբ բարկացած է, կարծես թէ երբեք մահուան անունը լսած չլինի. աղմուկ դրսից։ Լա՛ւ բան դուրս եկաւ։

CITIZEN I.
Երնեկ թէ նրանք իրենց անկողնում պառկած լինէին։

MENENIUS.
Երնեկ թէ նրանք տիբերիսի մէջ պառկած լինէին։ Ի՞նչ ցաւ ու կրակ. չէ՞ր կարող միթէ մի քիչ մեղմ խօսել։ Գալիս են բրուտոս եւ սիցինիոս՝ խուժանի հետ։

SICINIUS.
Ո՞ւր է այն իժը, որ ամբողջ քաղաքն ուզում էր քանդել եւ միայն ինքը ամէն մարդ լինել։

MENENIUS.
Ազնի՛ւ տրիբուններ։

SICINIUS.
Պէտք է բռնութեամբ տարպեյեան ժայռից վար գահավիժուի։ Նա օրէնքի դէմ հակառակ կանգնեց. ուրեմն օրէնքն էլ կը մերժէ նրան ուրիշ դատաստան, եթէ ոչ՝

միայն դաժանութիւնը հանրութեան ուժի, ինչ որ նա այնպէս արհամարհում է։

CITIZEN I.
Պէտք է իմանայ, որ տրիբունները նրա բերանն են, իսկ մենք՝ ձեռքերը։

ALL THE CITIZENS.
Պէտք է իմանայ, պէտք է իմանայ։

MENENIUS.
Էհէ՛յ, մարդ։

SICINIUS.
Լռիր։

MENENIUS.
Մի՛ գոռա։ *«Զարդէք»:*

SICINIUS.
Ի՞նչ ասել է այդ, որ դուք օգնել էք նրա խոյս տալուն։

MENENIUS.
Ականջ դրէք ինձ. ինչպէս որ գիտեմ կոնսուլի այնքան արժանիքները, կարող եմ ասել եւ սխալները։

SICINIUS.
Կոնսո՞ւլ, ի՞նչ կոնսուլ։

MENENIUS.
Կոնսուլ կորիոլան։

BRUTUS.
Նա՞ կոնսուլ։

CITIZEN IV.
Ո՛չ, ո՛չ, ո՛չ, ո՛չ, ո՛չ։

MENENIUS.
Եթէ կարող եմ, բարի ժողովուրդ, ձեր տրիբունների եւ ձեր հրամանով երկու բառ ասել, թոյլ տուէք խօսեմ. ինչ որ աւելի վնաս չի տայ ձեզ, քան ժամանակի այնքան կորուստը։

SICINIUS.
Կարճ խօսիր ուրեմն, քանզի վճռել ենք ճանապարհ դնել օձ դաւաճանին։ Արտաքսել նրան՝ վտանգ կը լինէր, իսկ այստեղ պահել՝ մեր հաստատ մահը. եւ այդ պատճառով վճիռ է տրուած՝ այս գիշեր մեռնի։

MENENIUS.
Թող աստուածները թոյլ չտա՛ն, որ մեր մեծանուն հռոմը, որի պարտիքը իր արժանաւոր որդկերանց հանդէպ մեծ իւպիտերի սեփական գրքում արձանագրած է, հրէշային մօր պէս ինքը կլանէ իր զաւակները։

SICINIUS.
Մի վատ ախտ է նա, որ պէտք է կտրել։

MENENIUS.
Նա մի անդամ է, մի քիչ ախտաւոր. կտրելը մահ է, բուժելը՝ դիւրին։ Ի՞նչ է արել նա հռոմին, որ մահուան արժանի լինի. մեր թշնամիներին սպաննելու մէջ թափած արիւնը, որ, գրաւ կը գամ, շատ ունկիներով դեռ աւելի է, քան ինչ որ ունի իր երակներում, իր հայրենիքի համար է թափել. իսկ մնացորդը իր հայրենիքի ձեռքով կորցնել ամէնքիս համար, որ այդ բանն անում, կամ թոյլ ենք տալիս, կը լինէր խարան, քանի աշխարհ կայ։

SICINIUS.
Ճիշտ հակառակն է։

BRUTUS.
Դա պարզ շեղում է. երբ նա սիրում էր իր հայրենիքը, հայրենիքն էլ նրան պատիւներ տուաւ։

MENENIUS.
Ոտքի մատուցած ծառայութիւնը, երբ որ այդ ոտքը քաղցկեղ է բռնել, չպէ՞տք է յարգուի իր անցեալի մէջ եղածի համար։

BRUTUS.
Չենք ուզում լսել. բաւ է. խուժեցէք նրա տան վրայ, եւ դուրս քաշեցէք նրան այնտեղից, միգուցէ՛ նրա այն նեխութիւնը, որ վարակիչ է, է՛լ շատ տարածուի։

MENENIUS.
Մէ՛կ բառ էլ, մէ՛կ բառ։ Այս վագրոտանի կատաղութիւնը, երբ որ նկատէ իր անկշռադատ շտապի վնասը, շատ ուշ կը ցանկայ կապարէ գնդէր իր կրունկներին. կարգով գործեցէք. միգուցէ՛ ծագեն կուսակցութիւններ, քանի որ նա էլ սիրողներ ունի եւ մեր մեծ հռոմը հռոմայեցիների ձեռքով աւերեն։ Երբ այդպէս լինի։

SICINIUS.
Ի՞նչ ես բարբանջում. չէ՞ որ մենք նրա հնազանդութեան նմուշը տեսանք. չէ՞ որ նա զարկեց մեր էդիլներին, ընդդիմացաւ մեզ։

MENENIUS.
Աչքի առէք այս. այն օրից ի վեր, որ սուր քաշելու կարող է դարձել, նա մեծացել է պատերազմներում, եւ վարժուած չէ մաղուած ոճերի. ալիւրն ու թեփը մէկտեղ է նետում առանց խտրութեան. հրաման տուէք ինձ, կ՝երթամ նրա մօտ եւ նրան ինձ

հետ կը բերեմ այստեղ, ուր խաղաղ կերպով եւ օրինական կարգ ու կանոնով թող պատասխան տայ, եւ իր վտանգը թող իր գլխին գայ։

SENATOR I.
Ազնիւ տրիբուններ, այս է աւելի մարդասէր ձեւը. միւս եղանակը արիւնահեղութեան տեղի է տալու, եւ վերջն անյայտ է սկզբին։

SICINIUS.
Շատ լաւ, ազնիւ մենենիոս։ Եղիր ուրեմն որպէս հանրութեան պաշտօնակատար։ Բարի վարպետներ, զէնքներդ ցած դրէք։

BRUTUS.
Տուն չերթաք. եկէք մեծ հրապարակը, այնտեղ կը սպասենք. եթէ մարցիոսին չբերէք այնտեղ, մենք էլ կը դիմենք մեր նախկին ձեւին։

MENENIUS.
Կը բերեմ նրան. [To the Senators.] Խնդրում եմ, դուք էլ ընկերանաք մեզ. պէտք է գայ. թէ ոչ, ամէնից վատը պիտի հետեւի։

SENATOR I.
Խնդրում եմ, եկէք, նրա մօտ գնանք։

[They all exit.]

][][

## ACT III. SCENE II.

Rome. Room in Coriolanus's House. Coriolanus enters with several Patricians.

### CORIOLANUS.

Թող ականջներես քաշ տան ամէն կողմ, ներկայացնեն ինձ մահ անուի վրայ, կամ վայրի ձիանց սմբակների տակ. տասը սար դիզեն տարպեյեանի վրայ, որ գահավէժը աւելի խորունկ անդունդի հասնի, քան տեսողութեան ամէն ճառագայթ, դարձեա՛լ նրանց հետ այսպէ՛ս կը լինեմ։

### PATRICIAN I.

Եւ ազնիւն այդ է։

### CORIOLANUS.

Շատ եմ զարմանում, որ մայրս հիմա գոհ չէ ինձանից, նա, որ սովոր էր նրանց անուանել բրդոտ ստրուկներ կամ արարածներ, որ ստեղծուած են, որ գրոշներով առուտուր անեն, գլխաբաց կանգնեն ժողովների մէջ, յօրանջեն, լռեն կամ սքանչանան, երբ ինձ պէս մի մարդ վեր կենայ տեղից՝ խաղաղութիւնից կամ պատերազմից խօսելու համար։

[Volumnia enters.]

### CORIOLANUS [cont.]

Քո վրայ եմ խօսում. ինչո՞ւ ուզեցիր, որ մեղմ լինէի։ Կ՝ուզէի՞ր միթէ, որ դաւաճանեմ իմ բնութիւնը։ Ասա՛ ուրեմն ես այն մարդը չե՞մ, ինչ ձեւանում եմ։

### VOLUMNIA.

Ա՛խ, որդի, որդի. կ՝ուզէի որ նախ հանդերձդ հագնես եւ յետոյ մաշես։

### CORIOLANUS.

Թող գնայ կորչի։

VOLUMNIA.
Եւ կարող էիր այն մարդը լինել, ինչ որ կաս իրօք՝ պակաս ճգնելով նոյնը լինելու։ Պակաս կը լինէր ընդդիմութիւնը միտումներիդ դէմ, եթէ միտումներդ ա՛յն օր ցոյց տայիր, երբ նրանց առաջ դիմադրութիւնը անկարող լինէր։

CORIOLANUS.
Թող գնան կախուին։

VOLUMNIA.
Յետոյ էլ՝ այրուին։

[Menenius enters with Senators.]

MENENIUS.
Չէ՛, կոպիտ եղար, մի քիչ չափազանց։ Պէտք է յետ գնաս եւ ուղղես մի քիչ։

SENATOR I.
Ուրիշ ճար չկայ. հակառակ դէպքում՝ մեր սիրուն քաղաքն, երկու մաս դարձած, պիտի կործանուի։

VOLUMNIA.
Լսիր խորհրդիս. ես մի սիրտ ունիմ նոյնչափ անճկուն, որքան որ քոնն է. բայց եւ մի ուղեղ, որ իմ բարկութեան կիրարկութիւնը ծառայեցնում է սեփական օգտիս։

MENENIUS.
Շատ ճիշտ խօսեցիք, ազնուամիտ կին։ Եւ նախքան թէ նա այսպէս խոնարհուէր նախիրի առաջ, թէ ժամանակի բուռն տագնապը չպահանջէր այդ որպէս դեղ ամբողջ պետութեան համար, ես կը հագնէի զրահս, որ հազիւ ուժ ունիմ կրելու։

CORIOLANUS.
Ի՞նչ պէտք է անեմ։

MENENIUS.
Պէտք է յետ դառնաս տրիբունների մօտ։

CORIOLANUS.
Լաւ, յետո՞յ, յետո՞յ։

MENENIUS.
Եւ զղջանք յայտնես ասածիդ համար։

CORIOLANUS.
Ես նրա՞նց առաջ. ես աստուածներին մեղայ չեմ ասի, ո՞ւր մնաց՝ նրանց։

VOLUMNIA.
Շատ վճռական ես, թէեւ այդ բանում որչափ խիստ լինես, այնքան ազնիւ է, բացի ծայրայեղ պարագաներից։ Դու միշտ ասել ես, թէ ազնուութիւնն ու քաղաքական խոհեմութիւնը անբաժանելի ընկերների պէս պատերազմի մէջ կենակից են միշտ։ Եթէ այդպէս է, ուրեմն ասա ինձ, խաղաղութեան մէջ ի՞նչ է կորցնում իւրաքանչիւրը միւսի միջոցով, որ չեն միանում։

CORIOLANUS.
Բա՛հ, բա՛հ։

MENENIUS.
Լաւ հարց է։

VOLUMNIA.
Եթէ ազնիւ է, պատերազմի մէջ կեղծել ինչ որ չես, այն է՝ լաւագոյն նպատակներիդ յաջողման համար քաղաքականութիւն բանեցնել, ինչպէ՞ս պակաս կամ վատ է, որ դրանք նոյնպէս անբաժան մնան խաղաղութեան մէջ, ինչպէս կռուի մէջ, երբ երկսի մէջ էլ պահանջը նոյնն է։

CORIOLANUS.
Ինչո՞ւ ես պնդում այդ բանի վրայ։

VOLUMNIA.
Հէնց ա՛յն պատճառով, որ հիմա պարտք կայ քո վրայ՝ խօսել ժողովրդի հետ. ո՛չ քո դրդումով, ո՛չ էլ քո սրտի թելադրութիւնով այլ լոկ բառերով, որոնց արմատը սոսկ լեզուիդ մէջ է, անհարազատներ եւ անմիտ վանկեր, եւ խորթ քո կրծքի ճշմարտութեանը։ Դա քեզ աւելի անպատուաբեր չէ, քան թէ, օրինակ, մի քաղաք տիրել անուշ խօսքերով. այնինչ, այլապէս, պիտի ստիպուէիր ենթարկուիլ բախտիդ եւ արիւնահեղ արկած փնտրելու. կը յօժարուէի դաւաճան լինել բնութեանս հանդէպ, եթէ իմ բախտը եւ սիրելիներս, վտանգի ներքեւ, խնդրէին ինձնից, որ այդպէս անեմ պատուաւոր կերպով. եւ այս բանի մէջ ես, կինդ, որդիդ, այս սենատորներն ու սեպուհները վտանգի մէջ ենք. եւ դու աւելի գերադասում ես հասարակութեան սինլքորներին խոժոռ դէմք ցոյց տալ, քան թէ մի չնչին փաղաքշանք ծախսել՝ այդ մարդկանց սիրտը շահելու համար, եւ փրկութիւնը որոշ բաների, որոնք, այլապէս, գուցէ կործանուին։

MENENIUS.
Տիրուհի, եկէք, գնանք միասին. քաղցր խօսեցէք. եւ դուք կը փրկէք ոչ միայն ներկան սաստիկ վտանգից, այլեւ անցեալի տուած կորուստը։

VOLUMNIA.
Խնդրում եմ, որդիս, գնա՛ նրանց մօտ գլխարկդ ձեռքիդ, որը այսչափ ցած խոնարհեցնելով՝ մօտեցիր նրանց, եւ թող քո ծունկը քարերն համբուրէ, քանզի այսպիսի հանգամանքի մէջ շարժուձեւերը պերճախօսութեան զօրութիւնն ունին, տգէտի աչքերն աւելի սուր են, քան ականջները. այսպէս, գլուխդ յաճախ շարժելով, ինչ որ կը պատժէ քո խրոխտ սիրտը, այժմ կակղացած, ինչպէս հասուն թութ, որ չի դիմանայ ձեռք դպցնելու. դու նրանց կ՝ասես։ «Ես ձեր զինուորն եմ եւ ռազմերի մէջ մեծցած լինելով՝ չունիմ այն փափուկ վարուելու ձեւը, որը, քաջ գիտեմ, ինձ համար պարտք է եւ ձեզ՝ իրաւունք, երբ պէտք է հայցեմ ձեր բարի

սէրը. բայց այսուհետեւ, կ՝ասես։ «Պատրաստ եմ ինքս ինձ, որ ձերն եմ, պատշաճեցնելու ձեր փափագներին, իմ կարողութեան եւ էութեան չափ»։

MENENIUS.
Այս որ կատարես, ինչպէս մայրդ ասաց, նրանց սրտերը քոնը կը լինեն. քանի որ նրանք նոյնքան դիւրութեամբ պատրաստ են ներել, երբ խնդրեն նրանց, որքան շատ խօսել եւ աննպատակ։

VOLUMNIA.
Դէ լաւ, խնդրում եմ, եկ հիմա, գնա՛ եւ զսպիր դու քեզ. թէեւ լաւ գիտեմ, որ կը նախընտրես թշնամուդ բռնել կրակի վիհի մէջ, քան նրան շոյել։

COMINIUS.
[Entering.] Հրապարակն էի. կա՛մ պէտք է շատ մարդ վեր առնես քեզ հետ, կա՛մ թէ պաշտպանուիս շատ հանդարտութեամբ, եւ կա՛մ չերեւաս. շա՛տ են բարկացած։

MENENIUS.
Լոկ քաղցր խօսքով։

COMINIUS.
Կարծեմ դա կ՝ազդէ, պայմանաւ, որ սա վարուել ուզենայ։

VOLUMNIA.
Պէտք է, եւ կ՝անէ։ Ասա՛, խնդրում եմ, որ պիտի անես, եւ ճամփայ ընկիր։

CORIOLANUS.
Ուզում էք գնա՞մ եւ ցոյց տամ նրանց անպաշտպան գանգս եւ ազնիւ սիրտս նուաստ լեզուովս ստախօս հանե՛մ, եւ սուտի բեռնը սրտիս վրայ դնե՛մ։ Լաւ, այդ էլ կ՝անեմ. բայց եթէ հարցը այս մի բուռ հողի կորուստը լինէր, մարցիոսի կազմս, նրանք շատ յօժար կաղային սրան, փոշի կ՝անէին եւ կը նետէին բոլոր հողմերին։ Գնանք հրապարակ։ Այնպիսի մի դեր պարտադրել էք ինձ, որ ես բնական չեմ

կարող խաղալ։

COMINIUS.
Ե՛կ, մենք քեզ կ՝օգնենք իբրեւ յուշարար։

VOLUMNIA.
Աղաչում եմ քեզ, անուշիկ որդիս. ինչպէս ասել ես, որ իմ առաջին գովեստներն էին, որ քեզ սկզբից զինուոր դարձրին, նոյնպէս էլ հիմա իմ գովեստները առնելու համար կատարիր մի դեր, որ մինչեւ այսօր դու չես խաղացել։

CORIOLANUS.
Լաւ, պէտք է անեմ։ Հեռո՛ւ, իմ միտում, թող մի ոեւէ պոռնիկի ոգի տիրակալէ ինձ, ռազմի կոկորդս, որ թմբուկիս հետ որոտակից էր, թող սրինգ դառնայ եւ բարակ, ինչպէս մի ներքինու ձայն, կամ մի աղջկայ, որ մանուկներին օրօր է երգում. անզգամների ժպիտներ վխտան այտերիս վրայ, դպրոցականի արցունքներ տիրէն ակնագունդերիս. թող մուրացկանի լեզու շարժուի շրթունքիս միջից. եւ զինուած ծունկս, ասպանդակիս մէջ միայն կորացող, մոյր ստացողի ծնկան պէս ծալուի։ Ոչ, ես չեմ անի. եթէ ոչ՝ պէտք է ինքս իմ սեփական ճշմարտութիւնս դադարեմ յարգել. եւ այսպէս, մարմնիս դերասանութեամբ ամէնէն կառչուն նուաստութիւնը ուսուցեմ հոգուս։

VOLUMNIA.
Դէ լաւ, արա այն, ինչ որ ընտրում ես։ Քեզնից աղերսելս անշուշտ աւելի անպատուութիւն է, քան քոնը՝ նրանցից։ Ամէն բան քանդուի՛. թող մայրդ աւելի գոռոզութիւնդ իր վրայ զգայ, քան երկիւղ կրէ քո վտանգաւոր hպարտութիւնից, քանի որ ես էլ հեգնում եմ մահը այնքան մեծ սրտով, որքան որ քոնը։ Լաւ, ուզածդ արա. արիութիւնըդ ինձ է պատկանում. ինձնից ես ծծել. բայց ինքդ տէր կաց գոռոզութեանդ։

CORIOLANUS.
Դէ լաւ, գոհ եղիր, խնդրում եմ, մայր իմ։ Կ՝երթամ հրապարակ. էլ մի՛ կշտամբիր. ես

նրանց սէրը կը ձեռնածուեմ, սիրտը կը շորթեմ, եւ տուն կը դառնամ՝ քաղաքի բոլոր գործաւորների սիրելին դարձած։ Նայիր, գնում եմ։ Բարեւիր կնոջս. կա՛մ տուն կը դառնամ անպատճառ կոնսուլ, կամ այլեւս երբեք մի՛ վստահանայ լեզուիս զօրութեանն իբրեւ շողոքորթ։

VOLUMNIA.
Արա՛, ինչ կ՝ուզես։ [Exits.]

COMINIUS.
Ե՛կ, տրիբունները սպասում են քեզ. պատրաստուիր մեղմիւ պատասխանելու. նրանք զինուած են այնպիսի զօրեղ մեղադրանքներով, ինչպէս, լսում եմ, որ երբեւիցէ չեն բարդել քո վրայ։

CORIOLANUS.
Մեր կարգախօսը կը լինի։ *«Մեղմիւ»:* Գնանք, խնդրում եմ, թող ինձ մեղադրեն հերիւրանքներով, իսկ ես իմ պատուով կը պատասխանեմ։

MENENIUS.
Այո՛, բայց մեղմիւ։

CORIOLANUS.
Լաւ, մեղմիւ լինի։ Մեղմի՛ւ։ [They exit.]

][][

ACT III. SCENE III.
Rome. Forum. Sicinius and Brutus enter.

BRUTUS.
Այս կէտում նրան սաստիկ մեղադրիր, թէ նա ձգտում է բռնակալութեան, եթէ մեր ձեռքից այդտեղ ճողոպրի, գզգզիր նրա ատելութիւնը ժողովրդի դէմ եւ ասա, թէ

նա անտիատներից կորզած աւարը իրեն է պահել։

[Aedile enters.]

BRUTUS [cont.]
Ի՞նչ լուր, գալի՞ս է։

AEDILE.
Այո՛, գալիս է։

BRUTUS.
Ի՞նչ ընկերներով։

AEDILE.
Մենենիոսի հետ եւ իր կուսակից սենատորների։

SICINIUS.
Ձայնատուների ցուցակը ունի՞ս, որ հաւաքել ենք մարդահամարի տետրերի վրայից։

AEDILE.
Այո՛, պատրաստ է։

SICINIUS.
Եւ ժողովե՞լ ես ըստ դասակարգի։

AEDILE.
Այո՛։

SICINIUS.
Շուտ ժողովրդին հաւաքիր այստեղ. երբ ասեմ։ *«Պէտք է որ այսպէս լինի՝։ ըստ մեր*

*համայնքի իրաւունքների եւ կարողութեան»* լինի դա տուգանք կամ աքսոր, կամ մահ, ապա բոլորը, երբ ասեմ՝ *«Տուգանք» թող գոչեն՝ «Տուգանք» երբ ես ասեմ՝ «Մահ» աղաղակեն՝ «Մահ»* պնդելով նախկին առանձնաշնորհի եւ արդար դատի կարողութեան վրայ։

AEDILE.
Կ՝իմացնեմ նրանց։

BRUTUS.
Եւ երբ սկսեն աղաղակ հանել թող չդադարեն, այլ խառն աղմուկով խստիւ պահանջեն, որ մեր վճիռը, ինչ էլ որ լինի, իսկոյն կատարուի։

AEDILE.
Շատ լաւ։

SICINIUS.
Յորդորիր նրանց, որ ուժեղ լինեն եւ պատրաստ իսկոյն մեր թելադրանքին կատարում տալու, երբ նրանց ասենք։

BRUTUS.
Գնա՛, կարգի դիր։ Էդիլը դու իսկոյն եւեթ բորբոքիր նրան։ Նա սովորել է միշտ յաղթող լինել եւ ուզածին չափ հակառակ կանգնել. հէնց որ բորբոքուի, էլ չի սանձուի, յետ չի գայ չափի, եւ այն ժամանակ նա կ՝ասէ, ինչ որ սրտի մէջ ունի, եւ ճիշտ այդտեղ է, որ պէտք է ջանանք վիզը կոտրելու։

SICINIUS.
Ահա գալիս է։

[Coriolanus, Menenius, Cominius enter.]

MENENIUS.
Հանդարտ, խնդրում եմ։

CORIOLANUS.
Այո՛, ճիշտ ինչպէս մի ախոռապան, որին կարող ես ամենափոքրիկ փողի փոխարէն անվերջ անգամներ սրիկայ կանչել։ Պաշտուած աստուածներն անսասան պահեն հռոմը յաւիտեան եւ արդարութեան ատեանները լիք յարգի մարդկանցով. սէր տնկեն մեր մէջ եւ խաղաղութեան ցոյցերով լցնեն մեր տաճարները, ոչ թէ պայքարով՝ մեր փողոցները։

SENATOR I.
Ամէ՛ն, ամէ՛ն։

MENENIUS.
ազնիւ իղձ։

SICINIUS.
Մօ՛տ, մօ՛տ, ժողովուրդ։

AEDILE.
Սուս, ականջ դրէք ձեր տրիբուններին։ Ունկնդիր եղէք, ասում եմ ձե՛զ՝ լռ՛ւռ։

CORIOLANUS.
Նախ ինձ թոյլ տուէք խօսեմ։

TWO TRIBUNES.
Լաւ, խօսիր, էհէ՛յ, լուռ կացէք։

CORIOLANUS.
Այ՞ս է լինելու արդեօք ձեր բոլոր մեղադրանքն իմ դէմ, ամէն բան այստեղ վերջանալո՞ւ է։

SICINIUS.
Իսկ ես հարցնում եմ, արդեօք յօժա՞ր ես հպատակելու համայնքի ձայնին, արդեօք ուզո՞ւմ ես ճանաչել նրա պաշտօնեաներին եւ օրինաւոր պատիժը կրել այն յանցանքներից, որ ապացուցուին քո դէմ։

CORIOLANUS.
Այո՛, ես ընդունում եմ։

MENENIUS.
Հէ՛յ, քաղաքացիք, տեսէք, ասում է, որ ընդունում է. պատերազմական ծառայութիւնը, որ նա արել է, նկատի առէք. միտ բերէք նրա մարմնի վէրքերը, որոնք նման են գերեզմանների ժամատներում։

CORIOLANUS.
Փուշի քերթածներ, սպիներ՝ միայն ծիծաղ յարուցող։

MENENIUS.
Եւ աչքի առէք, որ նա չի խօսում քաղաքացու պէս, բայց իբրեւ զինուոր կը գտնէք նրան. մի՛ դատէք նրա բիրտ ասածները իբրեւ չար բառեր, այլ միայն ոճեր, ինչպէս ասացի, զինուորի վայել, ոչ ոխի ձեր դէմ։

COMINIUS.
Լաւ է, լաւ. բաւ է։

CORIOLANUS.
Ի՞նչ եղաւ, որ ես, միաձայն կոնսուլ նշանակուելով, հասայ այնպիսի մի անարգութեան, որ նոյն ժամի մէջ պաշտօնս առիք։

SICINIUS.
Պատասխան տուր մեզ։

CORIOLANUS.
Ասա ուրեմն, ճիշտ է, եւ պէտք է։

SICINIUS.
Մեղադրում ենք քեզ, որ դաւ ես նիւթել հռոմից խլելու ամէն բարեխառն կառավարութիւն, որ դու քո առաջ բռնապետութեան շաւիղը հարթես, եւ դրա համար դաւաճան ես դու ժողովրդի դէմ։

CORIOLANUS.
Ինչպէ՞ս, դաւաճա՞ն։

MENENIUS.
Հանդա՛րտ. խոստումդ։

CORIOLANUS.
Խորին դժոխքի բոցերը բռնեն այդ ժողովուրդին. համարձակուիլ ինձ դաւաճան կանչել։ զրպարտո՛ղ տրիբուն, քան հազար մահ նստած լինէին այդ աչքերիդ մէջ, եւ ձեռքերիդ մէջ նոյնքան միլիոններ, եւ այդ երկսի չափ ստող լեզուիդ մէջ, դարձեալ կ՝ասէի։ *«Դու սուտ ես խօսում»,* այնպէս համարձակ, ինչ աստուածներին աղօթք ուղղէի։

SICINIUS.
Տեսա՞ք, ժողովուրդ։

ALL THE PLEBIANS.
Ժայռից վար նետենք, ժայռից վար նետենք։

SICINIUS.
Լռութի՛ւն. էլ կարիք չունինք նոր բաներ բարդել այս մարդու վրայ. արարքը տեսաք, խօսքը լսեցիք եւ վկայ եղաք, թէ ինչպէս զարկեց ձեր տրիբուններին եւ

ձեզ հայհոյեց, օրէնքների դէմ կանգնեց իր սրով, ինչպէս յոխորտաց ձեր աչքի առաջ այն անձերի դէմ, որոնց մեծ ուժը պէտք է նրան դատէ. այսքանը միայն, այնչափ ոճրագործ եւ այն տեսակի եղեռնական է, որ արժանի է դժնդակ մահուան։

BRUTUS.
Բայց լաւ ծառայած լինելով հռոմին։

CORIOLANUS.
Ի՞նչ ես դուրս տալիս ծառայութիւնից։

BRUTUS.
Ես այն եմ ասում, ի՛նչ գիտեմ։

CORIOLANUS.
Ո՞վ, դո՞ւ։

MENENIUS.
Այ՞ս է խոստումը, որ արիր մորդ։

COMINIUS.
Իմացիր խնդրեմ։

CORIOLANUS.
Ո՛չ, ես չեմ ուզում ոչինչ իմանալ։ Թող վճռեն վիժում սեպ տարպեյեանից, թափառիկ աքսոր, մաշկում, արգելոց, օրական մի կուտ՝ մաշուելու համար, դարձեալ չեմ գնի մէկ քաղցր խօսքով այդ մարդկանց գութը, ոչ էլ կը զսպեմ արիութիւնս՝ դրանց տալիքը շահելու համար, թէկուզ բաւ լինի։ «*Բարի լոյս*» ասել։

SICINIUS.
Այն բանի համար, որ նա մերթ ընդ մերթ, երբ որ նրանից կախուած է եղել, ոխ է ցոյց տուել ժողովուրդի դէմ եւ միջոց փնտրել՝ խլելու նրա կարողութիւնը եւ

ինչպէս հիմա հարուածներ տուել, եւ այդ, քիչ առաջ, ոչ միայն ահեղ դատաւորների ներկայութեանը, այլ անձի վրայ հէնց արդարութեան պաշտօնեաների, յանուն համայնքի եւ տրիբուններիս իշխանութիւնով, մենք այս րոպէից վանում ենք նրան մեր քաղաքից դուրս ի վտանգ անձին՝ տարպէյեան ժայռից գահավիժուելու, եթէ երբեւէ ոտքը ներս դնէ հռոմի դռներից։ Յանուն համայնքի, պէտք է կատարուի։

ALL THE CITIZENS.
Պէտք է կատարուի, պէտք է կատարուի։ Թող իսկոյն գնայ. նա աքսորուած է. պէտք է կատարուի։

COMINIUS.
Լսէք, վարպետներ, հասարակութեան իմ բարեկամներ, կոնսուլ եմ եղած եւ մարմնիս վրայ կարող եմ ցոյց տալ նշաններ հռոմի թշնամիներից։ Երկրիս բարիքը սիրում եմ սրտով եւ գուրգուրալից վերաբերմունքով, աւելի խորին եւ աւելի սուրբ, քան թէ իմ կեանքը, քան թէ սիրելի իմ կնոջ կեանքը, նրա արգանդի արգասիքները եւ իմ կողերի բոլոր գանձերը. եթէ, ուրեմն, ես ձեզ ասում եմ։

SICINIUS.
Ա՛հ, մենք լաւ գիտենք ձեր ասելիքը. ի՞նչ պիտի ասես։

BRUTUS.
Ասելիք չկայ. նա աքսորուած է որպէս թշնամի իր հայրենիքի եւ ժողովրդի։ պէտք է կատարուի։

MASSES ARE ASSES.
Պէտք է կատարուի, պէտք է կատարուի։

CORIOLANUS.
Դուք, համայնական շների վոհմակ, ձեր շունչն ատում եմ որպէս գոլորշին գարշ ճախինների, ձեր սէրն ինձ համար այնքան յարգ ունի, ինչ անթաղ մարդկանց

փտած լեշերը, որոնք իմ օդը ժանտահոտում են։ Ես եմ ձեզ վանում. մնացէք այստեղ ձեր փոփոխամիտ բնաւորութեան հետ. թող ամէն շշուկ, որչափ էլ չնչին, ցնցէ ձեր սիրտը, ձեր թշնամիներն իրենց ցցունքի թեքումով միայն հովահարեն ձեզ եւ ահաբեկեն։ Պահեցէք ընդմիշտ ձեր պաշտպաններին երկրից քշելու կարողութիւնը, մինչեւ, ի վերջոյ, ձեր քաղաքական տգիտութիւնը, որը չէ տեսնում, մինչեւ որ չզգայ իր կաշու վրայ, ոչ իսկ ձեր անձի վերապահումով, ձեր, որ ինքներդ ձեր թշնամին էք, գերի անէ ձեզ՝ իբրեւ յուսահատ խոնարհ ստրուկներ մի ազգի, որ ձեզ նուաճած լինի առանց զարկերի։ Դե՛հ, ձեր պատճառով արհամարհելով ձեր քաղաքը՝ թիկն եմ դարձնում։

[All exit save Sicinius and the Citizens.]

CITIZEN I.
Գնա՜ց, համայնքի թշնամին, գնա՜ց։

CITIZEN II.
Մեր թշնամին գնաց, գնաց, հո՜ւ, հո՜ւ, հո՜ւ։ Ամէնքը աղաղակում են եւ գլխարկներն վերեւ են նետում։

SICINIUS.
Գնացէք, տեսէք, երբ դուրս է ելնում քաղաքի դռնից. հետապնդեցէք ամէն տեսակի արհամարհանքով, ինչպէս որ նա ձեզ հետապնդել է։ Նեղացրէք նրան, եւ արժանապէս։ Մի պահակախումբ թող հետեւէ մեզ քաղաքի միջից։

ALL THE CITIZENS.
Հէ՜յ, եկէք գնանք քաղաքադուռը, տեսնենք մեկնելը։ Աստուածներն ազնիւ մեր տրիբուններին պահպանեն։

[They all exit.]

][][

## ACT IV. SCENE I.

Rome. Before a Gate of the City. Coriolanus enters with Volumnia, Virgilia, Menenius, Cominius and several Young Patricians.

### CORIOLANUS.

Է՛հ, թողէք լացը. կարճ՝ մնաք բարով. բազմագլուխ գազանն ինձ դուրս է վանում իր եղջիւրներով։ Չէ՛, մայր, որտե՞ղ է նախկին կորովդ, միշտ ասում էիր, թէ ճգնաժամն է ոգու փորձողը, եւ թէ հասարակ ձախողանքներին հասարակ մարդն էլ կարող է տոկալ, թէ հանդարտ ծովով ամէն նաւակներն այնպէս կը ծփան, որ վարպետութիւն կը թուայ մարդկանց. թէ վէրք ստանալ բախտի ամէնէն խիստ հարուածներից եւ հանդարտ մնալ՝ դա պահանջում է վեհ իմաստութիւն. դու միշտ այնպիսի կանոններով ես ինձ բեռնաւորել, որ անյաղթելի կը դարձնէին նրանց սերտողին։

### VIRGILIA.

Օ՛, երկինք, երկի՜նք։

### CORIOLANUS.

Թող, խնդրում եմ, կին։

### VOLUMNIA.

Կարմիր ժանտախտը թող բռնէ հռոմում գործաւորներին, եւ ամէն փէշակ տեղով կործանուի։

### CORIOLANUS.

Դե՛հ, բաւ է, բաւ է։ Ինձ պիտի սիրեն, երբ չկամ։ Մայր իմ, թող վերականգնի քո մէջ այն ոգին, երբ ասում էիր, թէ հերկուլեսի կինը լինէիր, նրա կատարած գործերից վեցը ինքդ կ՝անէիր, որ խնայէիր գէթ այդչափ քրտինք։ Կոմինիոս, ողջ կաց, գլուխդ մի՛ կախ տա։ Մնացէք բարով, ամուսին եւ մայր։ Դեռ լաւ կը լինի։ Դու, հաւատարիմ իմ հին մենենիոս, քո արցունքները աւելի աղի են, քան թէ աւելի ջահէլ մարդկանցը, եւ թունալից են աչքերիդ համար, նախկին զօրավարս, ես քեզ

տեսել եմ դաժան երեսով, դու էլ տեսել ես սիրտ քարացնող շատ տեսարաններ, խնդրում եմ, ասա՛ այս տխուր կանանց, թէ յիմար բան է անխուսափելի չարիքների վրայ ողբ ու կոծ անել. այլ նրանց վրայ ծիծաղել է պէտք. մայր իմ, լաւ գիտես, որ վտանգներս յաւէտ քեզ համար բերկրանք են եղել. հաստատ հաւատա՛, որ թէեւ հիմա մենակ եմ գնում, մենաւոր վիշապ, որի ճահիճից սոսկում են մարդիկ, եւ որի վրայ աւելի խօսում, քան նրան տեսնում, որդիդ կա՛մ կ՝անցնի սովորականից, կա՛մ կը բռնուի ճարտար խայծերով եւ նենգութիւնով։

VOLUMNIA.
Իմ միակ զաւակ, ուրտե՞ղ ես գնում. տար քո հետ բարի կոմինիոսին գէթ առժամանակ. ընտրիր քեզ մի գիծ, ոչ թէ ենթարկուիր ամէն արկածի, որ ցցուի յանկարծ քո ճամփի վրայ։

CORIOLANUS.
Օ՛, աստուածները՜։

COMINIUS.
Մի ամիս կը գամ քեզ հետ միասին, կը խորհրդակցենք, թէ ուրտեղ ապրես. որպէսզի մեզնից լուրեր ստանաս, եւ մենք էլ՝ քեզնից. որ երբ առիթը պատճառ հայթայթէ քեզ հետ կանչելու, կարիք չունենանք ամբողջ աշխարհը մարդ ուղարկելու մէ՛կ հոգու համար, եւ ձեռքից հանենք յարմար առիթը, որ միշտ սառչում է, երբ կարիքաւորը բացակայում է։

CORIOLANUS.
Ո՛չ, մնաս բարով. տարիք շատ ունիս թիկունքիդ վրայ. շա՜տ ես յագեցած պատերազմներով, որ գաս թափառես մի ռազմիկի հետ, որ դեռ անխոնջ է. ընկերացիր ինձ, մինչեւ դուրս ելնենք քաղաքադռնից։ Ե՛կ, անուշ կին իմ, սիրելի մայր իմ. եւ փորձուած ազնիւ իմ բարեկամներ, երբ մեկնած լինիմ, ողջերթ մաղթեցէք եւ ուրախ եղէք։ Եկէք։ խնդրում եմ, քանի տակաւին հողի վրա՛ն եմ, լուր կ՝առնէք ինձնից. եւ ոչինչ իմ վրայ չպիտի լսէք, եթէ ոչ, ինչ որ նման կը լինի իմ ցարդ եղածիս։

MENENIUS.
Ազնի՛ւ խօսեցիր. աւելի ազնիւ ոչ ոք չէ լսել: Դէ լա՛ւ, չարտասուենք. թէ կարենայի եօթը ամ ցնցել այս ոտքերից եւ բազուկներից, ամէն մի քայլիդ կ՝ընկերանայի:

CORIOLANUS.
Ձեռքդ տուր: Եկէք: [They exit.]

][][

ACT IV. SCENE II.
Rome. Street near the Gate. Sicinius and Brutus enter.

SICINIUS.
Ասա ամէնքին՝ տուն երթան. գնաց. աւելի հեռու չենք ուզում գնալ. նրա կուսակից պատրիկեանները շատ են զայրացել:

BRUTUS.
Մեր կարողութիւնն այժմ ցոյց տուինք. հիմա որ անցաւ, աւելի խոնարհ պէտք է երեւանք, քան գործը չեղած:

SICINIUS.
Ասա՝ տուն գնան: Ասա, թէ նրանց աւագ թշնամին գնաց, եւ նրանք մնում են իրենց նախկին ուժի մէջ:

BRUTUS.
Արձակիր գնան: Էդիլը: Գալիս են վոլումնիա, վիրգիլիա եւ մենենիոս:

SICINIUS.
Թող չհանդիպենք:

BRUTUS.
Ինչո՞ւ։

SICINIUS.
Ասում են՝ նա կատաղել է։

BRUTUS.
Մեզ նկատեցին, գնա՛ քո ճամփով։

VOLUMNIA.
[Entering.] Օ՛, լա՛ւ հանդիպում. թող աստուածների դիզած ժանտախտը հատուցանէ ձեզ ձեր սիրոյ վարձը։

MENENIUS.
Հանդարտ, հանդարտ կաց, բարձր մի՛ խօսիր։

VOLUMNIA.
Թէ լացս թողնէր, բաներ կ՝ասէի։ Բայց դեռ կը լսես։ [To Brutus.] Ձե՞ս ուզում գնալ։

VIRGILIA.
Ոչ, կեցիր դու էլ. ա՜խ, թէ այդ բառը ամուսնուս ասել կարողանայի։

SICINIUS.
Դուք մարդ չէ՞ք, ի՞նչ է։

VOLUMNIA.
Այո՛, դու յիմար. միթէ ամօ՞թ է։ Այս յիմարին տես, իմ հայրը մարդ չէ՞ր. աղուէս չէի՞ր դու, որ աքսորեցիր այնպիսի մարդու, որ հռոմի համար թուով աւելի զարկեր է տուել, քան թէ դու՝ բառեր։

SICINIUS.
Ազատիր, երկինք։

VOLUMNIA.
Այո՛, աւելի ազնիւ հարուածներ, քան երբեւիցէ դու՝ ազնիւ բառեր. եւ հռոմի օգտին քեզ մի բան ասեմ. ոչ, հիմա գնա՛. ոչ, դու էլ մնա։ Կ՝ուզէի որդիս արաբիա լինէր, եւ բոլոր ցեղդ՝ կանգնած նրա դէմ, եւ որդուս ձեռքին՝ իր կտրուկ սուրը։

SICINIUS.
Եւ յետո՞յ։

VIRGILIA.
Յետո՛յ. ամբողջ սերունդդ տակից կը ջնջէր։

VOLUMNIA.
Բիճ եւ բոլորը. սքանչելի՛ մարդ. եւ հռոմի համար ինչպիսի՛ վէրքեր։

MENENIUS.
Լաւ է, լաւ. հանդա՛րտ։

SICINIUS.
Երանի թէ նա իր երկրի համար շարունակէր այն, ինչ որ սկսեց. ոչ թէ յետ անէր այն ազնիւ կապը, որ ինքն էր կապել։

BRUTUS.
Այո՛, երանի՛։

VOLUMNIA.
Այո՛, երանի՛. դու սկսեցիր խուժանին գրգռել. կատունե՛ր, որոնք այնքան են հասու նրա արժէքին, որքան ես՝ գիտակ այն խորհուրդներին։

BRUTUS.
Խնդրեմ, թող գնանք։

VOLUMNIA.
Խնդրում եմ գնաք։ Ազնիւ բան արիք։ Գնալուց առաջ լսիր այս բանը. որչափ որ բարձր է պերճ կապիտոլը հռոմի ամէնէն գձուծ տնակից, այնչափ էլ որդիս՝ այս տիկնոջ այրը, սրա՛, տեսնո՛ւմ ես, որ աքսորեցիք, բարձր է ձեզանից, ձեզ բոլորիցդ։

BRUTUS.
Լաւ, լաւ. գնում ենք։

SICINIUS.
Ինչո՞ւ ենք կանգնել, որ մեզ մի խենթ կին այսպէս գզգզէ։ Տրիբունները [They exit.]

VOLUMNIA.
Իմ աղօթքները տարէք ձեզի հետ. երանի թէ դիք ուրիշ անելու գործ չունենային, այլ լոկ հաստատել իմ անէծքները. օրը մէ՛կ անգամ նրանց տեսնէի՝ դա կը վերցնէր սրտիս վրայից իր ծանր բեռը։

MENENIUS.
Դուք նրանց սաստիկ խայտառակեցիք եւ, հոգիս վկայ, իրաւունք ունիք։ Կը ճաշէ՞ք ինձ հետ։

VOLUMNIA.
Ցասումն է ճաշս. ինքս ինձ եմ ուտում, եւ այսպէս պիտի սովամահ լինեմ կերակրուելով։ Եկ, գնանք. բայց թող այդ անզօր վնգալն ու ողբ անելը, ինչպէս զայրոյթից ես բաց եմ թողել, իւնոյի նման։ Եկ, եկ, եկ։ Վոլումնիա եւ վիրգիլիա գնում են դուրս։

MENENIUS.
Թո՛ւհ, թո՛ւհ, թո՛ւհ։ [Exits.]

ACT IV. SCENE III.
Highway between Rome and Antium. Roman and Volsce enter from different directions.

ROMAN.
Ես քեզ լաւ եմ ճանաչում, պարոն, դու էլ՝ ինձ, կարծեմ անունդ ադրիան է։

VOLSCE.
Այո՛, պարոն. բայց ճիշտն ասած, պարոն, ես քեզ չեմ յիշում։

ROMAN.
Ես հռոմայեցի եմ. բայց նրանց հակառակ եմ, ինչպէս դու։ Դեռ չճանաչեցի՞ր ինձ։

VOLSCE.
Նիկանո՞ր. ոչ։

ROMAN.
Հէնց ինքը, պարոն։

VOLSCE.
Վերջին անգամ որ քեզ տեսայ, սրանից աւելի մօրուք ունէիր. բայց դէմքդ լաւ երեւում է լեզուիդ մէջ։ Հռոմում ի՞նչ նոր բան կայ։ Վոլսկ պետութիւնից մի թուղթ ունիմ, որ պէտք է քեզ հասցնէի հռոմում. լաւ է, որ մի ամբողջ օրով ճանապարհս կարճացրիր։

ROMAN.
Հռոմում տարօրինակ ապստամբութիւններ տեղի ունեցան. ժողովուրդը՝ սենատորների, պատրիկեանների եւ ազնուականների դէմ։

VOLSCE.

Տեղի ունեցա՞ն. միթէ վերջացրե՞լ են. մեր պետութիւնը այդպէս չէ մտածում. մերոնք պատերազմի պատրաստութեան մէջ են եւ յոյս ունին յարձակուել նրանց վրայ, երբ նրանց պառակտումը ամենատաք կէտին կը հասնի։

ROMAN.

Սաստիկ բոցը արդէն անցել է, բայց մի փոքրիկ բան բաւ է՝ նորէն հրահրելու. որովհետեւ ազնուականները այնքան են գրգռուել այն պատուական կորիոլանի աքսորումից, որ եկել են այն եզրակացութեան, թէ պէտք է ամէն իշխանութիւն ժողովրդից յետ վերցնել եւ նրանց տրիբունները մի անգամ ընդմիշտ ջնջել։ այս կրակը դեռ վառ է, կարող եմ ասել, եւ մօտ է բուռն կերպով բռնկելու։

VOLSCE.

Կորիոլանը աքսորուա՞ծ է։

ROMAN.

Այո՛, աքսորուած է։

VOLSCE.

Ի՜նչ փառաւոր ընդունելութիւն կը գտնես, երբ այդ լուրը տեղ հասցնես, նիկանոր։

ROMAN.

նրանց բանը լաւ է։ Ասում են, որ մի մարդու կինը գլխից հանելու ամէնէն յարմար րոպէն ա՛յն ժամանակն է, երբ մարդ ու կին կռուել են։ Ձեր ազնիւ տուլլոս աւֆիդիոսը լաւ դուրս կը գայ այս կռիւներից, երբ նրա մեծ հակառակորդը՝ կորիոլանը, իր հայրենիքի ծառայութիւնից արձակուել է։

VOLSCE.

Այդպէս էլ կը լինի։ շատ բախտաւոր եմ, որ այսպէս դիպուածով հանդիպեցայ քեզ. իմ գործս կատարուած է, եւ ուրախութեամբ կ՝ընկերանամ քեզ մինչեւ մեզ մօտ։

ROMAN.
Հիմակուանից մինչեւ ընթրիքը քեզ շատ տարօրինակ բաներ կը պատմեմ հռոմից. ամէն բան դասաւորւում է նրանց հակառակորդների օգտին։ Ասում ես, թէ արդէն պատրաստ բանակ ունի՞ք։

VOLSCE.
Ուղղակի թագաւորակա՛ն բանակ, հարիւրապետները եւ իրենց գունդերը առանձին զինուորագրուած են, արդէն ռոճիկ են ստանում, եւ հէնց որ իմաց տրուի, պէտք է մէկ ժամուայ մէջ պատրաստ լինեն։

ROMAN.
Հրճւում եմ՝ լսելով, որ պատրաստ են, եւ, կարծում եմ, ես եմ այն մարդը, որ նրանց իսկոյն գործի է կանչելու։ Ուրեմն, պարոն, սրտանց ուրախ եմ, որ քեզ հանդիպեցայ, եւ մեծ բաւականութիւն է ինձ քո ընկերութիւնը։

VOLSCE.
Իմ դերը խլում ես ինձանից, պարոն. ես պէտք է աւելի ուրախ լինեմ ձեր ընկերութիւնից։

ROMAN.
Լաւ, միասին գնանք։

[They exit.]

]|[

ACT IV. SCENE IV.

Antium. before Aufidius's House. Coriolanus enters in mean apparel, disguised and muffled.

CORIOLANUS.

Սիրուն քաղաք է այս անտիումը։ Ո՛վ քաղաք, ես եմ այրի դարձրել քո կնիկներին. որքա՜ն ժառանգներ այս պերճ շէնքերի, տեսել եմ, ինչպէ՛ս իմ գրոհներից ա՛խ են արձակել եւ վար թաւալուել։ Մի ճանաչիր ինձ, թէ ոչ, կանայքդ շամփուրներով, եւ տղաներդ քարերով կը գան գաճաճ կռուի մէջ ինձ սպանելու։

CITIZEN IV.

[Entering.] Եւ ձեզ։

CORIOLANUS.

Խնդրում եմ, տեղեկացրէք ինձ, եթէ կը հաճէք, թէ ո՛ւր է նստում մեծ աւֆիդիոսը։ Այս քաղաքո՞ւմն է։

CITIZEN IV.

Այո՛, այստեղ է. եւ նա այս գիշեր խնջոյք է տալիս պետութեան բոլոր ազնուականներին իր տան մէջ։

CORIOLANUS.

Որ՞ն է իր տունը։

CITIZEN IV.

Այս է, ձեր առաջ։

CORIOLANUS.

Շնորհակալ եմ. մնաս բարով, պարոն։

[CITIZEN IV exits.]

CORIOLANUS [cont.]
Ո՜վ աշխարհ, ի՜նչ սայթաքուն են յեղյեղումներդ. ընկերներ, որոնք նոր են պինդ երդուել, ասես թէ մէ՜կ սիրտ՝ երկու կուրծքի մէջ, որոնց ժամերը, որոնց մահիճը, ճաշն ու մարզանքը դեռ միասին են, երկուորեակ, կարծես անբաժան սիրով, յանկարծ մէ՜կ ժամում, մի սեւ գրոշի վէճի պատճառով գժտւում են, դառնում ոխերիմ ոսոխ. նոյնպէս ամէնէն ժանտ թշնամիներ, որոնց կիրքերը, որոնց դաւերը տանջել են նրանց եւ քունը կտրել՝ մէկը միւսին ջնջելու համար, մի պարզ դիպուածով, մի հաւկիթ չարժող փուչ բանի համար յանկարծ դառնում են սերտ բարեկամներ եւ իրենց բախտը իրար հետ կցում։ Նոյնն է եւ ինձ հետ։ Ծննդավայրս ատելի է ինձ, եւ այս թշնամի քաղաքի վրայ կեցած է սէրս։ Ներս մտնեմ քաղաք. թէ ինձ սպանէ, արդարութիւն է. եթէ տեղի տայ, ես էլ իր երկրին պիտի ծառայեմ։
[Exits.]

]()[

ACT IV. SCENE V.
Antium. hall in Aufidius' House. Music within. Officers enter.

OFFICER I.
Գինի՛, գինի՛, գինի՛. էսպէս էլ ծառայութիւն կը լինի՞. կարծեմ մեր ընկերները քնել են։ [Exits.]

OFFICER II.
Կոտուսն ո՞ւր է. տէրս կանչում է նրան. կոտո՛ւս։

CORIOLANUS.
[Entering.] Գեղեցիկ տուն է. խնջոյքի հոտը ախորժելի է. սակայն ես հիւրի կերպարանք չունիմ։ Նորէն գալիս է ա սպասաւորը։

OFFICER I.

Ի՞նչ ես ուզում, բարեկամ։ Որտեղացի՞ ես։ Այստեղ քո տեղը չէ, դուրս գնա, խնդրեմ։ [Exits.]

CORIOLANUS.

Ո՛չ, աւելի լաւ ընդունելութեան արժանի չեմ ես, թէեւ կորիոլան։

OFFICER II.

Որտեղի՞ց ես եկել, մարդ. միթէ՞ դռնապանի աչքերը գլխի մէջ չէին, որ քեզպէսներին ներս է թողել. խնդրեմ, դուրս գնա։

CORIOLANUS.

Հեռացիր։

OFFICER II.

Հեռանա՞մ. դո՛ւ հեռացիր։

CORIOLANUS.

Դէ լաւ, գլուխ ես տանում։

OFFICER II.

Ի՞նչ աներես մարդ ես. հիմա քեզ խօսք հասկանալ կը տամ։

OFFICER III.

Ի՞նչ մարդ է սա։

OFFICER I.

Էս տեսակ տարօրինակ մարդ ես քիչ եմ տեսել. չեմ կարողանում տնից դուրս հանել. խնդրում եմ, տիրոջս ասա՝ գայ, սրա հետ խօսէ։

OFFICER III.
Ի՞նչ գործ ունիս այստեղ, մարդ. խնդրում եմ՝ հեռու կենաս այս տնից։

CORIOLANUS.
Թող կանգնեմ այստեղ, ձեր վառարանին հոյ վնաս չե՞մ տայ։

OFFICER III.
Ո՞վ ես դու։

CORIOLANUS.
Մի ազնուական։

OFFICER III.
Խի՜ստ աղքատ ազնուական։

CORIOLANUS.
Ճիշտ է, աղքատ եմ։

OFFICER III.
խնդրում եմ, աղքատ ազնուական, գնա, ուրիշ տեղ կանգնիր, այստեղ քո տեղը չէ. խնդրեմ, հեռացիր, հայդէ՜։

CORIOLANUS.
Գնա, բանիդ կաց. գնա, փորդ լցրու պաղած պատառներով։

[Coriolanus pushes the Officer away.]

OFFICER III.
Ի՞նչ է, չե՞ս գնում։ խնդրեմ, ասա իմ տիրոջը, թէ ի՛նչ տարօրինակ մի հիւր է եկել իրեն։

OFFICER II.
Կ՝ասեմ։ [Exits.]

OFFICER III.
Որտե՞ղ ես բնակւում։

CORIOLANUS.
Ամպհովանու տակ։

OFFICER III.
Ամպհովանու տա՞կ։

CORIOLANUS.
Այո՛։

OFFICER III.
Որտե՞ղ է այդ։

CORIOLANUS.
Ցիների եւ ագռաւների քաղաքում։

OFFICER III.
Ցիների եւ ագռաւների քաղաքո՞ւմ։ Էս ի՞նչ աւանակն է ուրեմն։ Հետն էլ ես բնակւո՞ւմ։

CORIOLANUS.
Ո՛չ, ես քո տիրոջ ծառաներից չեմ։

OFFICER III.
Ինչպէ՞ս թէ, մարդ. ինչպէ՞ս ես խառնւում իմ տիրոջ հետ։

CORIOLANUS.

Ա՛յ, աւելի պարկեշտ ծառայութիւն է, քան թէ խառնուիլ տիրուհիդ հետ։ Հէնց դուրս ես տալիս ու դուրս ես տալիս. գնա, ափսէդ պահիր, դո՛ւրս։

AUFIDIUS.

[Entering.] Ո՞ւր է այդ մարդը։

OFFICER II.

Ահա, սա է, տէր իմ. շան պէս ծեծ կը տայի նրան, եթէ չվախենայի, որ ներսի հիւրերին կ՝անհանգստացնեմ։

AUFIDIUS.

Ուրկի՞ց ես եկել. ի՞նչ ես ուզում. անո՞ւնդ։ Ինչո՞ւ չես խօսում. դէ, խօսիր, այ մարդ։ Ի՞նչ է անունդ։

CORIOLANUS.

Գլխի ծածկոցը հանելով։ Տուլլոս, եթէ դեռ ինձ չես ճանաչում եւ տեսնելով ինձ՝ չես համարում ինձ այն մարդը, որ կամ, հարկն ինձ կը ստիպէ ասել անունս։

AUFIDIUS.

Ի՞նչ է անունդ։

CORIOLANUS.

Անդաշն է անունս վոլսկեան ունկերի եւ վատահնչիւն քո ականջներին։

AUFIDIUS.

Ասա անունդ։ Դաժան դէմք ունիս, եւ հրամայական բան կայ երեսիդ։ Թէեւ պարաններդ ու առագաստդ պատառոտուած են, բայց ազնիւ նաւի երեւոյթ ունիս։ Ի՞նչ է անունդ։

CORIOLANUS.
Խոժոռիր դէմքդ. չե՞ս ճանաչում ինձ։

AUFIDIUS.
Ո՛չ, չեմ ճանաչում։ Անո՞ւնդ։

CORIOLANUS.
Անունս կայիոս մարցիոս է, որ քեզ յատկապէս եւ ընդհանրապէս բոլոր վոլսկերին վնաս եւ չարիք շատ է հասցրել. եւ մականունս վկայ է դրան, կորիոլանն եմ. իմ տաժանալից ծառայութիւնը եւ իմ ապերախտ մայր-երկրի համար թափուած արիւնը վարձատրուեցան միայն ու միայն այդ մականունով, որ լաւ յուշարար եւ վկայող է այն քէն ու ոխի, որ դու իմ հանդէպ պէտք է ունենաս. այդ մականունը միայն մնաց ինձ։ Ռամիկ ամբոխի անգթութիւնը եւ չար նախանձը, թոյլատրութիւնով մեր տմարդասիրտ պատրիկեանների, որոնք խմբովին ինձնից հեռացան, կուլ տուին բոլոր եղած-չեղածս։ Նրանք թոյլ տուին, որ ստրուկները իրենց քուէով ինձ քշէն հռոմից։ Այս ծայր աղէտն է, որ բերել է ինձ մինչեւ քո երդը ոչ թէ այն յոյսով, թիւր չըմբռնես ինձ, որ կեանքս փրկեմ. ո՛չ, եթէ մահից երկիւղ կրէի, աշխարհի բոլոր մարդկանցից դո՛ւ ես այն անձը, որից պիտի խորշէի։ Այս սոսկ մաղձից է՝ հաշիւս լրիւ մաքրելու համար ոսոխներիս հետ. ահա կանգնած եմ այստեղ՝ քո առաջ։ Եթէ կայ քո մէջ վրէժ փնտրող սիրտ, որ ուզէ ոչ սոսկ իր ոխը հանել, այլ նաեւ վերջ տալ այն ամօթալի կտրատումներին, որոնք երկրիդ մէջ տեսանելի են մի ծայրից միւսը, շտապիր իսկոյն եւ օգուտ քաղիր. այնպէս գործի դիր, որ իմ վրիժառու ծառայութիւնից քեզ օգուտ դուրս գայ. ուզում եմ կռուել իմ բորոտացած հայրենիքի դէմ գեհենի բոլոր դեւերի մաղձով։ Բայց եթէ այդքան չես համարձակւում կամ թէ յոգնած ես եւ դժկամ՝ նորէն բախտդ փորձելու, ապա, մէկ բառով, ես էլ ապրելուց յոգնած եմ սաստիկ, ահա դնում եմ վիզս քո առաջ եւ ոխիդ առաջ, եթէ չկտրես, յիմար կը լինես, քանի որ ես միշտ հետեւել եմ քեզ ատելութիւնով, հազար տոններով արիւն եմ վոթել քո երկրի կուրծքից. եւ եթէ ապրեմ, դա քեզ նախատինք պիտի համարուի, միայն թէ ապրեմ, որ քեզ ծառայեմ։

AUFIDIUS.

Օ՛, մարցիո՛ս, մարցիո՛ս. ամէն մի բառը, որ այժմ ասացիր, քաղհանեց սրտես հին ատելութեան ամէն մի արմատ։ եթէ իւպիտերն այն ամպի միջից երկնային բաներ խօսէր եւ ասէր՝ ճշմարիտ է այս, նրան աւելի չէի հաւատայ, քան քեզ, վե՜հ մարցիոս, թոյլ տուր փաթաթեմ իմ բազուկները նոյն մարմնի շուրջը, ում դէմ նիզակիս խիստ կարծր ծայրը հարիւր հերթ բեկուել, եւ փշուրները վիրաւորել են լուսնի երեսը. սեղմում եմ սրտիս իմ սուրի սալը. եւ պիտի մրցեմ նոյնչափ եռանդով եւ ազնուօրէն քո սիրոյ հետ, որչափ մրցել եմ փառատենչ ուժով քո քաջութեան հետ։ Թող նախ ասեմ քեզ. ես սիրած էի այն մանկամարդին, որ ինձ կին առնի. ոչ մի տարփածու չէ եղել երբեք աւելի անկեղծ. բայց այն, որ ես քեզ տեսնում եմ այստեղ, ո՜վ ազնիւ էակ, սիրտս աւելի կայթել է տալիս խանդավառութեամբ, քան երբ որ տեսայ առաջին անգամ հարսիս ներս գալը իմ դռան շեմքից։ Ասեմ քեզ, ով մարս, մի բանակ ունինք արդէն ոտքի վրայ, եւ միտք ունէի մի անգամ եւս կտրել ասպարդ բազուկիդ վրայ, կամ թեւս տուժել այս փորձիս համար։ Տասներկու անգամ իրարու վրայ յաղթել ես դու ինձ, այն ժամանակից ես ամէն գիշեր երազ եմ տեսել, որ մենք երկուսով մենամարտում ենք, կամ թէ քունիս մէջ երկուսով մէկտեղ գետին գլորուած՝ ջանք էինք անում իրարու գլխից սաղաւարտ կորզել կամ թէ իրարու կոկորդը սեղմում. եւ զարթնում էի քնից կէս-մեռած, առանց պատճառի։ Պատուական մարցիոս, նոյնիսկ ոչ մի այլ կռիւ չլինէր մեր եւ հռոմի մէջ, եթէ ոչ սոսկ այն, որ դու այնտեղից տարագրուած ես, ամէնքս պատրաստ պիտի լինէինք զինուոր գրուելու, տասներկուամեայ պատանիներից մինչ եօթանասուն, եւ ռազմ թափելով ապերախտ հռոմի աղիքների մէջ՝ գոռ հեղեղի պէս կը նուաճէինք։ Օ՛, եկ, ներս գնանք. եւ ձեռքից բռնիր ինձ հետ բարեկամ սենատորների, որոնք եկել են՝ ինձ ողջերթ ասեն, քանի որ արդէն պատրաստուել էի ձեր երկիրները ասպատակելու, թէեւ ոչ հռոմը։

CORIOLANUS.

Դուք ինձ օրհնում էք, բարի աստուածներ։

AUFIDIUS.

Եթէ, ուրեմն, գերազանց տէր իմ, ուզում ես անձամբ յագուրդ տալ քէնիդ, առ ինձ

յանձնուած բանակի կէսը. եւ քո գերագոյն փորձառութիւնով հմուտ լինելով քո երկրի ուժեղ եւ թոյլ կողմերին՝ ինքդ որոշիր քո ուղեգիծը, լինի այդ՝ բախել հռոմի դռները, լինի՝ հեռաւոր գաւառների մէջ հարուածել նրանց, նախ սարսափեցնել, յետոյ կործանել։ Բայց եկ, թող առաջ յանձնարարեմ քեզ նրանց, որ պէտք է հաւանութիւն տան քո փափագներիդ, եկ, հազար բարով. դու, շատ աւելի սիրուած բարեկամ, քան երբեւիցէ ատուած թշնամի. եւ սակայն, մարցիոս, շատ էիր ատուած։ Ձեռքդ տուր, մարցիոս, եւ բարի գալուստ։ Կորիոլան եւ աւֆիդիոս։

[They exit.]

SERVANT I.
Առաջ գալով։ Ի՞նչ տարօրինակ փոփոխութիւն։

SERVANT II.
Ձեռքովս երդում, ուզում էի մահակով վռնդել մարդուն, բայց մի բան ինձ ասեց, որ նա էն չի, ինչ որ իր հագուստը ցոյց է տալիս։

SERVANT I.
Եւ ի՜նչ բազուկ ունի. իր մատով ու բութով ինձ էնպէս շուռ տուեց, կարծես պտուտակ էր ֆռռացնում։

SERVANT II.
Երեսիցը տեսայ, որ մի բան կայ մէջը. մէկ տեսակ երես ունի որ։ Չեմ կարող ասել՝ ինչ տեսակ։

SERVANT I.
Հա, էդպէս է՝ դատելով իր տեսքից, թող կախուեմ, եթէ չմտածեցի, որ նրա մէջ մի բան կայ, որ չէի կարող մտածել։

SERVANT II.
Ես էլ էդպէս, երդւում եմ։ Պարզապէս ամենահազուագիւտ մարդն է, որ կայ

աշխարհում։

SERVANT I.
Այո, էդպէս է, բայց նրանից մեծ զինուոր դու գիտես՝ ո՛վ է։

SERVANT II.
Ո՞վ, մեր մեծը։

SERVANT I.
Ի՞նչ ասել կուզի։

SERVANT II.
Վեց հատ նրա նմանին արժէ։

SERVANT I.
Չէ՛, էդպէս էլ չի. բայց կարծում եմ՝ մերը աւելի մեծ զինուոր է։

SERVANT II.
Ճիշտն ասած, ընկե՛ր, չեմ կարող ուղղակի ասել, թէ ի՛նչ պիտի ասել։ Մի քաղաք պաշտպանելու մեր զօրավարը սքանչելի է։

SERVANT I.
Այո՛, առնելու մէջ էլ նոյնպէս։ Նորէն գալիս է երրորդ ծառան։

SERVANT III.
Էհէ՛յ, ստրուկնե՛ր, լուր եմ բերել. նոր լուր, անպիտաններ։

SERVANT II.
Ես հռոմայեցի չէի լինի, ինչ ազգից էլ որ լինէի։ Աւելի կ՝ուզէի մահապարտ լինել։

SERVANT III.
Էս մարդը որ եկել է, հէնց նա է, որ քանի-քանի անգամ մեր զօրավարի բուրդը գզել է։

SERVANT I.
Ինչո՞ւ ես ասում։ «*Մեր զօրավարի բուրդը գզել է*»։

SERVANT III.
Չեմ ասում։ «*Մեր զօրավարի բուրդը գզել է*». ասում եմ՝ նրա հետ լաւ չափուել է։

SERVANT II.
Դէ լաւ, մենք ընկերներ ու բարեկամներ ենք. նա միշտ մեր զօրավարին կռփել է, զօրավարից՝ իրենից եմ լսել։

SERVANT I.
Եթէ ճշմարիտն ուզես, նրան ուղղակի ջախջախել է. կորիոլիի առաջ նրան էնպէս ջարդեց ու ծեծեց, որ քուֆթայ շինեց։

SERVANT II.
Եւ եթէ մարդակերային ախորժակ ունենար, կարող էր նրան խաշել եւ ուտել։

SERVANT I.
Յետո՞յ, լուրիցդ խօսիր։

SERVANT III.
Էն էի ասում. էնտեղ՝ ներսը, նրանից էնպէս են քաշւում, կարծես մարսի զաւակն ու ժառանգը լինէր. նստացրել են սեղանի ամենաբարձր ծայրը. սենատորները չեն համարձակւում ոչ մի հարցում անել նրան, ճաղատ գլուխները բացած՝ կանգնել են առաջը։ Մեր զօրավարն ինքը նրա հետ վարւում է, ինչպէս սիրուհու հետ. նրա ձեռքին էնպէս է դիպչում, կարծես սրբութիւն լինի, եւ աչքերի ճերմկուցն է դուրս բերում, երբ որ նա խօսում է։ Բայց իմ լուրի ուղն ու ծուծը է՛ս է. մեր զօրավարը

միջից կիսուել է եւ էսօր կէսն է իր երեկ եղածի. միւս կէսը գնացել է էն մարդուն, ամբողջ սեղանի խնդրանքով եւ հաւանութիւնով։ Ասում է՝ պիտի գնայ, հռոմի դռնապանի ականջները պիտի քաշէ։ Ինչ որ առաջը գայ, սուրից անց կ՝ացնէ եւ ճանապարհ բաց անի իր համար։

SERVANT II.
Նա իրաւ որ կարող է անել, աւելի, քան ոեւէ մարդ, որ կարող եմ երեւակայել։

SERVANT III.
Անե՞լ, ի հարկէ կարող է. ինչու որ, ինձ լսիր, բարեկա՛մ, նա էնքան շատ բարեկամ ունի, որքան թշնամի, եւ էդ բարեկամները, բարեկամ, ինձ լսիր, թէեւ բարեկամ են, բայց չեն համարձակում, ինչպէս ասում են, բարեկամ ցոյց տալ իրանց, քանի որ նա աքորուած է։

SERVANT I.
*«Աքորուած»* ի՞նչ է։

SERVANT III.
Բայց երբ որ տեսնեն, բարեկամ, որ աքլորի կատարը նորից բարձրացել է, եւ ուժը տեղն է եկել, իրենց ծակերից դուրս կը գան, ինչպէս ճագարները՝ անձրեւից յետոյ, եւ ամէնքը նրա հետ քէֆ կ՝անէն։

SERVANT I.
Բայց ե՞րբ է ճամփայ ընկնում։

SERVANT III.
Էգուց, էսօր, էս րոպէիս. կէսօրից յետոյ թմբուկը կը զարկեն, համարեա թէ էս էլ իրանց քէֆի մէկ մասն է, որ պէտք է վերջացնեն պռուկները սրբելուց առաջ։

SERVANT II.
Ուրեմն նորից շարժում ենք ունենալու։ Էս խաղաղութիւնը ոչնչի պէտք չէ, եթէ ոչ՝

երկաթը ժանգոտացնելու, դերձակները շատացնելու եւ աշուղներ առաջ բերելու։

SERVANT I.
Ես կռիւ եմ սիրում, ասում եմ քեզ. կռիւը խաղաղութիւնից էնքան բարձր է, որքան ցերեկը՝ գիշերից. աշխոյժ բան է, արթուն, ականջը սուր եւ խաղաղութիւնը իսկ եւ իսկ կաթուած է, թմրութիւն, հեղգ, խուլ, քնած, անզգայ, որ աւելի շատ բաստարդ է առաջ բերում, քան թէ պատերազմը մարդ է սպանում։

SERVANT II.
Էդպէս է, եւ եթէ, էսպէս ասենք, պատերազմը կնիկ փախցնող է, խաղաղութիւնը կնիկ փչացնող է։

SERVANT I.
Եւ մարդկանց իրարու հետ թշնամացնող։

SERVANT III.
Պատճառ, որ մարդիկ իրարու էնքան պէտք չեն ունենում։ Պատերազմի պէս լաւ բան չկայ։ Յոյս ունիմ տեսնեմ՝ հռոմայեցիք էլ վոլսկերի չափ էժան են։ Վեր են կենում, վեր են կենում։ Ա եւ

SERVANT II.
Ներս, ներս, ներս։

[They all exit.]

][][

## ACT IV. SCENE VI.

Rome. Public Place. Sicinius and Brutus enter.

SICINIUS.

Լուր չկայ նրանից, ոչ էլ պէտք ունինք երկիւղ կրելու. նրա ճարերը մտահոգիչ չեն։ շնորհիւ մարդկանց հանդարտած մտքին եւ խաղաղութեան, հակառակ նախկին բուռն խուճապին, մենք հիմա նրա բարեկամներին ամաչեցնում ենք՝ ասելով։ «Տեսա՞ք, աշխարհքը չանցաւ»։ Նրանք աւելի գոհ կը լինէին, թէեւ իրենք էլ դրա պատճառով վնասւում էին որ ըմբոստ խմբեր մեր փողոցները վրդովեցնէին, քան թէ տեսնէին, որ խանութպաններ երգում են իրենց կրպակների մէջ եւ ուրախ-զուարթ գնում են գործի։

BRUTUS.

Լաւ առաջն առինք։

[Menenius enters.]

BRUTUS [cont.]

Մենենիո՞սն է սա։

SICINIUS.

Այո՛, նա ինքն է։ Օ՛, այս վերջերս շատ հեզ է դարձել։ Բարեւ, բարեկամ։

MENENIUS.

Բարեւ ձեզ, բարեւ։

SICINIUS.

Ձեր կորիոլանին շատ փնտրող չկայ, եթէ ոչ՝ միայն իր համհարզները։ Հանրապետութիւնն անխախտ կանգնել է եւ կանգնելու է, որքան էլ որ նա հակառակ լինի։

MENENIUS.
Ամէն բան լաւ է, եւ շատ աւելի լաւ պիտի լինէր, եթէ նա զիջէր եւ համակերպուէր։

SICINIUS.
Ո՞ւր է. լուր ունի՞ս։

MENENIUS.
Ոչ մի լուր չունիմ. մայրը եւ կինն էլ ոչ մի լուր չունին։

[Several Citizens enter.]

CITIZENS I.
Դիք ձեզ պահապան։

SICINIUS.
Բարի երեկոյ, մեր դրացինե՛ր։

BRUTUS.
Բարի երեկոյ, բարեւ ամէնքիդ։

CITIZEN II.
Մենք եւ մեր կանայք եւ զաւակները ծնկաչոք ամէնքս աղօթարար ենք երկուսիդ համար։

SICINIUS.
Ապրէք ամէնքդ էլ եւ յաջող լինէք։

BRUTUS.
Յաջողութիւն ձեզ, բարի դրկիցներ։ Մենք ուզում էինք, որ կորիոլանն էլ ձեզ մեր չափ սիրէր։

ALL THE CITIZENS.
Դիք ձեզ պահապան։

SICINIUS and BRUTUS.
Յաջողութիւն ձեզ, յաջողութիւն ձեզ։ Քաղաքացիք

[The Citizens all exit.]

SICINIUS.
Աւելի ուրախ, աւելի վայել ժամանակ է այս, քան երբ այս մարդիկ վազվռտում էին փողոցների մէջ՝ գոչելով։ *«Քանդենք, տակնուվրայ անենք»*։

BRUTUS.
Կայիոս մարցիոսը շատ լաւ սպայ էր պատերազմի մէջ, բայց ամբարտաւան, իր գոռոզութեան գերի, փառամոլ, խելք ու մտքից դուրս ինքնասէր։

SICINIUS.
Այո՛, եւ վառուած տենչով անբաժան գահի, զերծ օգնականից։

MENENIUS.
Չեմ կարծում այդպէս։

SICINIUS.
Եթէ հիւպատոս մնացած լինէր, հիմա ողբալով պիտի տեսնէին, որ նա այդպէս էր։

BRUTUS.
Մեծ աստուածները լաւ խափանեցին, եւ հռոմն ապահով նստած է հանգիստ, երբ որ նա չկայ։ Գալիս է մի էդիլ։

AEDILE.
Ազնիւ տրիբուններ, մի ստրուկ է եկել, որին բանտ դրինք. ասում է՝ վոլսկերն երկու

զանազան զօրախումբերով մտել են հռոմի նահանգներից ներս եւ պատերազմի ամենադաժան ոխակալութեամբ աւերում են այն, ինչ որ գտնում են իրենց ճամփի վրայ։

MENENIUS.
Հա՛, աւֆիդիոսն է. որ մեր մարցիոսի աքսորման լուրը լսած լինելով՝ նորէն հանել է իր կոտոշները, որ ներս էր քաշել իր խեցիի մէջ եւ չէր խիզախում գլուխը դուրս բերել, երբ որ մարցիոսը կանգնած էր որպէս տիրական հռոմի։

SICINIUS.
Ի՞նչ ես դուրս տալիս մարցիոսի մասին։

BRUTUS.
Գնա ծեծել տուր այդ լուր բերողին։ Անկարելի է, որ վոլսկերն այդպէս յանդգնեն մեր դէմ։

MENENIUS.
Անկարելի՞ է։ Չէ՞ որ անցեալը մեզ ցոյց է տուել, որ կարելի է, եւ երեք անգամ, իմ տարիքիս մէջ, օրինակ ունինք։ Գնա այդ մարդուն հարցուփորձ արա պատժելուց առաջ, թէ որտեղից է այդ լուրը լսել, միգուցէ՛ ծեծ տաս ճիշտ լուր բերողի, մի մարդու, որ քեզ զգուշացնում է երկիւղալիից։

SICINIUS.
Մի՛ խօսիր. գիտեմ, կարելի չէ այդ։

BRUTUS.
Չէ կարող լինիլ։

MESSENGER.
[Entering.] Ազնուականներն ամէնքն շուտով սենատն են գնում. մի լուր է եկել, որ նրանց դէմքերն այլափոխել է։

SICINIUS.
Դա նոյն ստրուկն է. նա է տարածել. դու գնա իսկոյն, եւ ժողովրդի աչքերի առաջ ծեծել տուր նրան. նրա լուրն է լոկ։

MESSENGER.
Բայց, ազնիւ տէր իմ, ստրուկի լուրը երկրորդող էլ կայ, եւ դեռ աւելի. է՜լ սարսափելի։

SICINIUS.
Է՞լ սարսափելի։

MESSENGER.
Եւ շատ լեզուներ պատմում են ազատ, որ կայիոս մարցիոս, ինքն էլ միացած աւֆիդիոսի հետ, մի զօրամասի գլուխն անցած, արշաւում է հռոմ եւ անծայրածիր վրէժ է ուխտել մեծից մինչեւ փոքր։

SICINIUS.
Շատ խելքի մօտ է։

BRUTUS.
Դա սարքուած է սոսկ, որ վախկոտները բարի մարցիոսի դարձը ցանկանան։

SICINIUS.
Այդ է բուն խաղը։

MENENIUS.
Հաւանական չէ, նա եւ աւֆիդիոս այնքան իրար հետ անհաշտելի են, որքան էն սաստիկ հակառակները։ Գալիս է մի այլ լրաբեր։

[Messenger II enters.]

MESSENGERII.
Սենատից եկել եւ կանչում են ձեզ։ Մի ահեղ բանակ՝ կայիոս մարցիոսի ղեկավարութեամբ, որ միացած է աւֆիդիոսի հետ, թափում են իրենց կատաղութիւնը մեր մարզերի վրայ եւ իրենց առաջ ամէն բան սրբել, կրակի են տուել եւ աւերում են, ինչ որ գտնում են։

COMINIUS.
[Entering.] Լա՜ւ բան սարքեցիք։

MENENIUS.
Ի՞նչ լուր կայ, ի՞նչ լուր։

COMINIUS.
Ինքներդ օգնեցիք, որ առեւանգեն ձեր աղջիկներին, որ կապարները ձեր տանիքների ձեր գլխին հալեն, որ ձեր քթի տակ լլկեն ձեր կանանց։

MENENIUS.
Լուրն ի՞նչ է, ի՞նչ լուր։

COMINIUS.
Որ ձեր տաճարներն այրեն վարից վեր իրենց շաղախի մէջ. իրաւունքներդ, որոնց վրայ այնպէս պինդ կանգնել էիք, այնպէս փոքրացնեն, որ մի ասեղի ծակի մէջ մտնեն։

MENENIUS.
Դէ լաւ, լուրն ասա։ Լա՜ւ բան սարքեցիք։ Լա՜, վախենում եմ։ խնդրեմ, լուրդ ասա։ Եթէ մարցիոսը միացած լինի այն վոլսկերի հետ։

COMINIUS.
Նրանց աստուածն է. նրանց վարում է որպէս մի էակ, որին կերտել է ոչ թէ բնութիւնը, բայց մի այլ աստուած՝ աւելի վարպետ մարդ կերտելու մէջ։ Նրանք

գալիս են նրա ետեւից լամուկներիս դէմ, ոչ նուազ վստահ, քան թէ տղաներ՝ թիթեռ որսալիս կամ մսագործներ՝ ճանճ սպանելիս։

MENENIUS.
Լա՛ւ բան սարքեցիք, թէ՛ դուք, եւ թէ՛ ձեր գոգնոցի մարդիկ. դուք, որ այնպէս խիստ ջատագով էիք արհեստաւորի ձայնատուութեան եւ սխտոր ուտող խուժանի շունչին։

COMINIUS.
Ձեր ականջներից կը ցնցէ հռոմը։

MENENIUS.
Ինչպէս հերկուլեսն հասած պտուղը ցնցէ ծառերից։ Լա՛ւ գործ սարքեցիք։

BRUTUS.
Բայց ճի՞շտ է, տէր իմ։

COMINIUS.
Հոգիդ դուրս կը գայ, նախքան թէ տեսնես, որ ճշմարիտ չէ։ Բոլոր նահանգներն ապստամբում են գոհունակութեամբ, իսկ դիմադրողը խայտառակւում է իբրեւ քաջ տգէտ եւ սպանւում է իբր անխախտ յիմար։ Բայց ո՞վ է կարող պարսաւել նրան. ձեր թշնամիներն, ինչպէս նրանը, տեսնում են հիմա, թէ նա ի՛նչ մարդ է։

MENENIUS.
Կորած ենք ամէնքս, եթէ չգթայ այն ազնիւ մարդը։

COMINIUS.
Ո՞վ պիտի հայցէ։ Այդ տրիբունները չեն կարող հայցել իրենց ամօթից. իսկ ժողովուրդը. այնքան արժան է նա գթութեան, որքան որ գայլը՝ հովուի շնորհին։ Իր ամենալաւ բարեկամները եթէ ասէին։ *«խնայիր հռոմին»* նրան նոյն չափով կը գրգռէին, որքան այն մարդիկ, որ արժանի են նրա ատելութեան եւ հէնց այդ

բանով նրան թշնամի կը համարուէին։

MENENIUS.
Այո՛, շատ ճիշտ է։ Եթէ տեսնէի, որ նա իմ տանը կրակ է տալիս, որ պիտի նրան մոխիր դարձնէ, ես կը խպնէի նրան ասելու։ *«Խնդրում եմ, մի՛ անիր»։* Լա՛ւ ձեռքեր ունիք, դուք եւ բանուորներդ, լա՛ւ բան սարքեցիք։ Լաւ դողցոց բերիք այս հռոմի վրայ, այնպիսի դողցոց, որ բուժում չունի։

TRIBUNE.
Մի՛ ասէք, որ մենք դողցոց բերինք։

MENENIUS.
Ինչպէ՞ս, մե՞նք բերինք։ Մենք սիրում էինք կայիոս մարցիոսին, բայց, յիմարի պէս, ինչպէս տմարդի ազնուականներ, տեղի տուեցինք ձեր խուժանային խմբերի առաջ, որոնք ճիչերով նրան քաղաքից դուրս վռնդեցին։

COMINIUS.
Բայց վախենում եմ, որ գոռոցներով յետ պիտի բերեն, տուլլոս աւֆիդիոս՝ աշխարհի երկրորդ համբաւուած մարդը, հնազանդ է նրա հրահանգներին, որպէս թէ նրա մի սպան լինէր. հռոմը նրանց դէմ ո՛չ լաւ վարչութիւն, ո՛չ պաշտպանութիւն, ո՛չ էլ ուժ ունի. այլ, բոլորի տեղ, յուսահատութիւն։

[Lynch mob enters.]

COMINIUS [cont.]
Ահա խուժանը։ Եւ աւֆիդիոսը մարցիոսի հե՞տ է։ Դուք այն մարդիկն էք, որոնք մեր օդը ապականեցիք՝ գարշահոտ, ճարպոտ ձեր գդակները վերեւ նետելով, երբ կորիոլանին հարայ-հրոցով աքսոր ղրկեցիք։ Հիմա գալիս է. եւ զինուորներից ոչ մէկի գլխին չկայ ոչ մի մազ, որ ձեզ հարուածող մտրակ չդառնայ, եւ ամէն մէկդ, թեթեւագլուխներ, որ գդակներդ վեր էիք նետում, վար կը գլդորուէք եւ ձեր ձայների վարձը կը ստանաք։ Հոգ չէ, թէ նա ամէնքիս այրէ, մէկ մոխիր շինէ։ Մենք

արժանի ենք։

CITIZEN IV.
Իրա՛լ, սոսկալի լուրեր ենք լսում։

CITIZEN I.
Իմ մասին գալով՝ երբ որ ասացի։ *«Աքսորենք նրան»* ասացի։ *«Ափսո՛ս»:*

CITIZEN II.
Ես էլ ասացի։

CITIZEN IV.
Եւ ես էլ նոյնպէս, եւ, ճշմարիտն ասած, մեզնից շատերը հէնց էդպէս ասացին։ Ինչ որ մենք արինք, լաւ մտքով արինք. եւ թէպէտ մենք յօժարակամ ընդունեցինք նրան աքսորելը, բայց դա մեր կամքի հակառակ եղաւ։

COMINIUS.
Լաւ պտուղներ էք, դուք, ձայնատուներ։

MENENIUS.
Լաւ բան սարքեցիք, դուք եւ ձեր խումբը։ Գնա՞նք կապիտոլ։

COMINIUS.
Չերթանք՝ ի՞նչ անենք։ Կոմինիոս եւ մենենիոս

[They exit.]

SICINIUS.
Դէ լաւ, վարպետներ, գնացէք ձեր տուն։ շատ մի՛ վրդովուէք։ Սրանք ա՛յն կողմի կուսակիցներ են, որոնք շատ ուրախ պիտի լինէին, որ լուրը ճշտուէր, թէեւ առերես երկիւղ են կեղծում։

CITIZEN I.
Թող աստուածները գթան մեր վրայ։ Եկէք, վարպետներ, եկէք տուն գնանք։ Ես միշտ ասել եմ, թէ վատ բան արինք, երբ որ մենք նրան աքսոր ղրկեցինք։

CITIZEN II.
Ճիշտ է, ամէնքս էլ էդպէս ասեցինք։ Եկէք տուն գնանք։ Քաղաքացիք։

[They exit as well.]

BRUTUS.
Այս լուրը ինձ դուր չէ գալիս։

SICINIUS.
Ոչ էլ ինձ։

BRUTUS.
Գնանք կապիտոլ։ Հարստութեանս կէսը կը տայի, որ սա սուտ լինէր։

SICINIUS.
Եկ գնանք, խնդրեմ։ [They exit.]

][][

ACT IV. SCENE VII.
Camp a short distance from Rome. Aufidius enters with his Lieutenant.

AUFIDIUS.
Սաւառնո՞ւմ են դեռ հռոմայեցու շուրջ։

LIEUTENANT.

Չգիտեմ, թէ ի՞նչ կախարդիչ բան կայ նրա մէջ, տէր իմ։ Ձեր զինուորները պաշտում են նրան. նրանց՝ *«Հայր մերը»* կերակրից առաջ, սեղանի զրոյցը եւ՝ *«Գոհանամքը»* կերակրից յետոյ՝ բոլորը նա է, եւ դուք նրա մօտ նսեմանում էք ձեր իսկ արածով։

AUFIDIUS.

Չեմ կարող հիմա ուրիշ կերպ անել. եւ եթէ դիմեմ այլ միջոցների, մեր ձեռնարկութեան ոտքը կը կոտրեմ։ Նա այժմ աւելի հպարտ է վարւում նոյնիսկ իմ հանդէպ, քան կարծում էի՝ երբ առաջին հերթ նրան գրկեցի։ Բայց նա իր բախտից գոռոզացող չէ, եւ պէտք է ներեմ, ինչ որ նրա մէջ բարուոքելի չէ։

LIEUTENANT.

Եւ սակայն, տէր իմ, շատ աւելի լաւ եղած կը լինէր, որ նրան ձեզ հետ զոյգ հրամանատար կարգած չլինէիք. այլ կա՛մ ինքներդ գործը վարէիք, կա՛մ նրան մենակ յանձնած լինէիք։

AUFIDIUS.

Հասկանում եմ քեզ, եւ վստահ եղիր, երբ որ նրա հետ հաշուի կը նստենք, նա դեռ չգիտէ, թէ ի՜նչ կարող եմ նրա դէմ փաստել։ Թէեւ թւում է, եւ ինքն էլ նոյնիսկ այդպէս է կարծում, եւ երեւում է հանրութեան աչքին, թէ նա ամէն բան լաւ է կատարում եւ հոգածու է վոլսկեան պետութեան, թէ վիշապի պէս պատերազմում է եւ սուրը հազիւ պատեանից քաշած՝ արդէն յաղթող է, բայց այնուհանդերձ անհոգ է թողել մի բան, որ նրան տնաքանդ կ՝անէ, նրան կամ թէ ինձ։

LIEUTENANT.

Բայց, խնդրեմ, տէր իմ, կարծո՞ւմ էք, թէ նա հռոմը կը վերցնէ։

AUFIDIUS.

Ամէն մի քաղաք հնազանդում է՝ դեռ չպաշարուած, եւ հռոմի բոլոր ազնուականներն բարեկամներն են, սենատորները եւ պատրիկներն էլ սիրում են

նրան. եւ տրիբունները կռիւ չգիտեն. իսկ ժողովուրդը նոյնքան հապճեպով յետ պիտի կ՝անչէ, որքան հապճեպով վռնդեց նրան. եւ, իմ կարծիքով, նա հռոմի հանդէպ այնպէս կը լինի, ինչ ծովարծիւը՝ ձկների հանդէպ. նրանց կը բռնէ հէնց իր բնական գերիշխանութեամբ։ Սկզբում նրանց ազնիւ ծառան էր. սակայն չկարաց իր պատիւները համաչափ կրել. արդեօք արդի՞ւնք էր մեծամտութեան, որ վարակում է բախտաւոր մարդուն, միշտ յաջողողին. թէ դատողութեան պակասութի՞ւն էր, որ պատահաբար ձեռք բերած դիրքը չկարողացաւ լաւ օգտագործել. թէ՞ բնութիւնը, չկարենալով ուրիշ բան լինել, քան այն, ինչ որ է, յաւէտ անփոփոխ բարձից սաղաւարտ, տէ՛ր խաղաղութեան, նոյն դաժանութեամբ եւ գործակերպով, ինչ իշխան ռազմի. բայց մէկն ու մէկը, այն, ինչ բոլորից մի քիչ մաս ունի, ոչ թէ բոլորը, պէտք է գէթ այսքան չքմեղեմ նրան, նախ երկիւղալի դարձրեց նրան, յետոյ՝ ատելի եւ աքսորական. բայց նա այնպիսի արժանիք ունի, որ այդ բոլորը խեղդում է իսկոյն։ Մեր լաւ գործերի մեկնաբանումը օրուայ խնդիր է. եւ կարողութիւնն, ինքնին գովելի, չունի աւելի ստոյգ գերեզման, քան թէ մի ամբիոն, ուրկից ներբողուի, ինչ որ արել է։ Մէկ կրակ վանում է մի ուրիշ կրակ. մի գամ՝ մի այլ գամ. իրաւունքները կործանարար են իրաւունքների, ուժերն՝ ուժերի։ Բայց եկ, հեռանանք։ Կայիոս, երբ հռոմը տիրած կը լինես, այ՛ն ժամանակ է, որ խիստ աղքատ ես. այն օր դու իմն ես։

[They exit.]

][][

## ACT V. SCENE I.

Rome. Public Place. Menenius, Cominius, Sicinius and Brutus enter.

### MENENIUS.

Ո՛չ, ես չեմ երթայ. լսեցիք արդէն, թէ ինչ է ասել նրան, որ երբեմն իր զօրավարն էր, որ բոլոր սրտով եւ առանձնապէս սիրում է նրան։ Ինձ հայր է կոչել. բայց դա ի՞նչ բան է։ Դո՛ւք, դո՛ւք գնացէք, աքսորողներդ, եւ գետին ընկէք նրա վրանից մէկ մղոն առաջ, եւ ծունկի գալով՝ գութ աղերսեցէք։ Եթէ ժխտել է իր կոմինիոսին, աւելի լաւ

է՝ ես մնամ տունը։

COMINIUS.
Այնպէս ցոյց տուաւ, որ ինձ ծանօթ չէ։

MENENIUS.
Լսո՞ւմ էք։

COMINIUS.
Սակայն մէկ անգամ անունս տուաւ. իսկ ես յիշեցրի մեր խիստ հինաւուրց ծանօթութիւնը, եւ այն շիթերը, որ մենք միասին թափել ենք դաշտում։ Նա կորիոլան չէ ուզում կոչուիլ. մերժում է ամէն անուն ու տիտղոս. ասում է, թէ ես մի կերպ ոչինչ եմ, առանց տիտղոսի, մինչեւ այն օրը, որ վառուած հռոմի կրակի վրայ մի անուն կռեմ։

MENENIUS.
Ահա, տեսնո՞ւմ էք, ինչ լաւ էք գործել։ Մի խումբ տրիբուններ շատ ջանք գործ դրին, որ այս հռոմի մէջ ածուխն աժաննայ. ազնի՛ւ յիշատակ։

COMINIUS.
Ասացի նրան, որքա՜ն ներելը արքայական է, երբ մարդ յոյս չունի. նա պատասխանեց։ *«Դա զուր հայցանք է պետութեան կողմից այնպիսի մարդու, որին պատժել է»։*

MENENIUS.
Շատ լաւ, կարո՞ղ էր ուրիշ բան ասել։

COMINIUS.
Ես աշխատեցի զարթեցնել նրա համակրութիւնը դէպ իր անձնական բարեկամները։ Նա պատասխանեց։ *«Չեմ կարող կանգնել եւ քաղհան անել բարեկամներին մի կոյտ բորբոսած գարշ յարդի միջից. յիմարութիւն է մի երկու*

*խղճուկ հատիկի համար չայրել նեխուածքը եւ միշտ ենթարկուիլ գարշահոտութեան»։*

MENENIUS.
Մէկ-երկու խղճուկ հատիկի համա՛ր։ Մէկ հատը ես եմ. իր մայրը, կինը եւ իր զաւակը այս ազնիւ մարդն էլ, այդ հատիկներն ենք. դուք՝ մգլած յարդը, եւ ձեր գարշ հոտը լուսնից անցնում է։ Մենք ձեր համար է, որ պէտք է այրուինք։

SICINIUS.
Ո՛չ, աղաչում եմ, համբերող եղէք։ Եթէ մերժում էք ձեր օգնութիւնը այս ճգնաժամում, որի նմանը չէ եղել երբեք, գէթ երեսձեձանք մի՛ տաք մեզ այդքան մեր տագնապի մէջ։ Բայց, անտարակոյս, եթէ միջնորդ էք ձեր երկրի համար, ձեր բարի լեզուն, աւելի, քան թէ որեւէ բանակ որ րոպէապէս կարենանք կազմել, գուցէ կ՝անգնեցնէ մեր հայրենակցին։

MENENIUS.
Ո՛չ, ես չեմ ուզում միջամուխ լինել։

SICINIUS.
Գնացէք, խնդրեմ, գնացէք իր մօտ։

MENENIUS.
Ի՞նչ պէտք է անեմ։

SICINIUS.
Գէթ մի փորձ արէք, թէ ինչ կարող է ձեր սէրը գործել մարցիոսի վրայ ի՝ նպաստ հռոմի։

MENENIUS.
Լաւ, ենթադրեցէք, որ կայիոս մարցիոս ինձ յետ դարձնէ, ինչպէս որ արաւ կոմինիոսի հետ՝ առանց լսելու. այն ժամանակ ի՞նչ։ Սոսկ դժգոհացած մի հին

բարեկամ՝ սիրտը վշտաբեկ նրա ցոյց տուած դաժանութիւնից. երբ այդպէ՞ս լինի։

SICINIUS.
Այդպէս էլ լինի, ձեր բարի կամքը շնորհակալիք կը ստանայ հռոմից, այնչափով, որ դուք բարեմիտ եղաք։

MENENIUS.
Լաւ, կը ձեռնարկեմ. գուցէ լսէ ինձ. բայց, շուրթը կրծել։ «Հը՛մ» անել, ինչպէս կոմինիոսի հետ, դա ինձ ճնշում է. գուցէ կոմինիոս անյարմար ժամի մօտեցաւ նրան. նա ճաշ չէր արել. երբ դեռ դատարկ են մեր երակները, արիւնը սառն է. առաւօտները մենք բարկացկոտ ենք. չենք հակուած տալու կամ թէ ներելու. բայց երբ մեր արեան այս խողովակներն ու ջրմուղները լցնում ենք գինով եւ խորտիկներով, հոգին աւելի կակուղ է դառնում, քան քահանայի ծոմապահութեամբ. եւ դրա համար կը սպասեմ, մինչեւ նա կերած-խմած եւ իմ խնդրանքին տրամադիր լինի, յետոյ կը սկսեմ ներգործել վրան։

BRUTUS.
Դուք շատ լաւ գիտէք սիրտը շահելու ճիշտ ճանապարհը, եւ չէք խոտորուի։

MENENIUS.
Այո՛, ազնիւ խօսք, կը փորձեմ նրան, թող գայ, ինչ կ՝ուզէ. շուտով կը տեսնեմ՝ յաջո՞ղ է, թէ ոչ։ [Exits.]

COMINIUS.
Նա երբեք սրան ականջ չի դնի։

SICINIUS.
Ո՞չ։

COMINIUS.
Ո՛չ, ասեմ ձեզ. բազմած ոսկու մէջ, աչքերը կարմրած, որպէս թէ ուզէր կրակել

հռոմը, եւ սրտի ոխը բանտապահ դարձած իր ողորմութեան, երբ նրա առաջ ես ծունկի ընկայ, շատ նուազ ձայնով ինձ ասաց՝ «Վեր կաց» եւ անխօս ձեռքով ինձ ճամփեց, այսպէս՝ Ինչ անելու է, գրով ուղարկեց նա իմ ետեւից. ինչ որ երդումով պարտք է ստանձնել, պնդել իր յայտնած պայմանների վրայ. այնպէս որ զուր է որեւիցէ յոյս, եթէ ոչ միայն, որ ազնիւ մայրը եւ նրա կինը, որոնք, լսել եմ, միտք ունին գնալ եւ գութ աղերսել իր երկրի համար։ Գնանք ուրեմն եւ մեր լաւագոյն աղաչանքներով փութացնենք նրանց։ [They exit.]

][][

## ACT V. SCENE II.

Advanced post of the Volscian Camp before Rome. The Guards at their station. Menenius enters.

### GUARD I.

Կանգ առ. ուրկի՞ց ես։

### GUARD II.

Կաց եւ յետ դարձիր։

### MENENIUS.

Դուք շատ առնացի պահապաններ էք։ Լաւ է, բայց ես էլ, ձեր թոյլտուութեամբ, պետութեան մարդ եմ. եկել եմ խօսեմ կորիոլանի հետ։

### GUARD I.

Ուրկի՞ց ես։

### MENENIUS.

Հռոմից։

GUARD I.

Չես կարող անցնել. պէտք է յետ դառնաս. մեր զօրավարը չէ ուզում լսել հռոմից եկողի։

GUARD II.

Դու աւելի շուտ հռոմդ կը տեսնես բոցերի ճարակ, քան թէ կը խօսես կորիոլանի հետ։

MENENIUS.

Բարի՛ ընկերներ, եթէ լսել էք ձեր զօրավարի խօսելը հռոմից եւ իր այնտեղի բարեկամներից, հազար մէկի դէմ գրաւ կը դնեմ, որ իմ անունը լսած կլինիք. մենենիոս է այն։

GUARD I.

Թող այդպէս լինի. գնա՛, յետ դարձիր. անունիդ արժէքն անցուկ չէ այստեղ։

MENENIUS.

Ասում եմ, ընկեր. քո զօրավարը իմ բարեկամն է. ես գիրքն եմ եղել քո զօրավարի մեծագործութեանց, որի մէջ մարդիկ կարդացել են միշտ նրա համբաւը, անհանգունատիպ, գուցէ ճոխացրած։ Ինչու որ՝ ես միշտ գովաբանել եմ բարեկամներիս, որոնց մեծն է նա, այն բոլոր չափով, ինչ որ թոյլ կը տար ճշմարտութիւնը առանց գայթելու. նոյնիսկ, երբեմն, ինչպէս մի գնդակ հարթ գետնի վրայ, անցել եմ կէտից եւ նրա գովքով կեղծ եմ դրոշմել ճշմարտութիւնը։ Ուրեմն, ընկեր, թոյլ տուր, որ անցնեմ։

GUARD I.

Ազնիւ խօսք, պարոն, եթէ դու էնքան սուտեր ասած լինէիր՝ նրան գովելու համար, որքան որ բառեր ասացիր՝ ինքդ քեզ գովելու, էլի չէիր կարող անցնել, եթէ նոյնիսկ սուտ խօսելը նոյնքան առաքինի բան լինէր, որքան զգաստ ապրելը։ Ուրեմն յետ գնա՛։

MENENIUS.

Խնդրում եմ, ընկե՛ր, յիշիր, որ անունս մենենիոս է, միշտ ձեր զօրավարի կուսակցութեան ջատագով։

GUARD II.

Որքան էլ որ նրա համար սուտ խօսած լինես, ինչպէս ինքդ էլ ընդունում ես, ես մի մարդ եմ, որ նրա ձեռքի տակ ճշմարիտ եմ խօսում՝ ասելով, որ չես կարող անցնել. ուրեմն յետ գնա՛։

MENENIUS.

Ձեր զօրավարը ճաշե՞լ է, կարո՞ղ ես ասել, որովհետեւ ես չեմ ուզում նրա հետ խօսել ճաշելուց առաջ։

GUARD I.

Դու հռոմայեցի՞ ես։

MENENIUS.

Նոյնքան հռոմայեցի, որքան զօրավարդ։

GUARD I.

Ուրեմն պէտք է դու էլ նրա պէս հռոմը ատես։ Ինչպէ՞ս էք կարող, դուք, որ ձեր քաղաքի դռներից նրան դուրս վռնդեցիք, նրան, որ հէնց այդ դռների բուն պաշտպանողն էր, դուք, որ ամբոխային բուռն տգիտութեամբ տոգորուած՝ ձեր վահանը ինքներդ յանձնեցիք ձեր թշնամուն, ինչպէ՞ս էք կարող դուրս գալ նրա վրէժխնդրութեան դէմ պառաւ կնիկների դիւրին հեծեծանքներով, ձեր կոյս աղջիկների պաղատական ձեռքերով կամ թէ քեզ պէս քայքայուած զառամած անդամալոյծի, ինչպէս թւում ես, բարեխօսութեամբ։ Կարծո՞ւմ ես միթէ, որ էդպէս թոյլ շնչով կարող ես մարել էն ահագին բոցերը, որով քո քաղաքը շուտով այրուելու է։ Ո՛չ, դու սխալւում ես. ուրեմն յետ գնա հռոմ եւ պատրաստուիր մեռնելու։ Դուք դատապարտուած էք, եւ մեր զօրավարը երդուել է ձեզ ոչ մի թողութիւն եւ ներում չշնորհել։

MENENIUS.
Ա՛յ մարդ, եթէ հրամանատարդ իմանայ, որ ես այստեղ եմ, ինձ հետ յարգանքով կը վարուի։

GUARD II.
Բա՛հ, իմ հրամանատարը քեզ չէ ճանաչում։

MENENIUS.
Ուզում եմ ասել՝ զօրավարդ։

GUARD I.
Իմ զօրավարը քեզ չի ուզում տեսնել. յետ գնա, ասում եմ, գնա՛. եթէ ոչ՝ այդ կէս շիշ արիւնդ կը թափեմ. գնա՛ եւ էդքանով էլ գոհ եղիր։

MENENIUS.
Բայց մարդ, ա՛յ մարդ։

[Coriolanus and Aufidius enter.]

CORIOLANUS.
Ի՞նչ է պատահել։

MENENIUS.
Տեսա՞ր, մարդ։ Քեզ մի բան ասեմ. հիմա կ՝իմանաս, թէ ես որքան յարգուած եմ. կը տեսնես, որ մի որեւէ սինլքոր պահակ չէ կարող ինձ հետ քշել իմ որդի կորիոլանից. կը տեսնես, թէ ինձ ինչպէս կ՝ընդունեն, եւ դրանից կը հասկանաս, թէ քեզ կախաղան է սպասում կամ թէ մի մահ՝ աւելի երկար հանդիսատեսելու եւ աւելի անգութ՝ հանդուրժելու. իսկոյն կը տեսնես եւ կ՝ուշաթափուես՝ մտածելով, թէ ի՛նչ է գալու գլխիդ։ (կորիոլանին։) մեծափառ աստուածները ամէն ժամ խորհուրդ կազմեն քո անձնական բարօրութեան համար եւ քեզ ոչ նուազ սիրեն, քան քո

ծերունի հայրդ՝ մենենիոսը։ Օ՛, զաւակս, զաւակս. դու կրակ ես պատրաստում մեզ համար. նայիր, ահա ջուր՝ մարելու համար։ շատ դժուարաւ համոզեցին ինձ քո մօտ գալու. բայց վստահ լինելով, որ ոչ ոք ինձնից զատ ընդունակ չէ քո վրայ ազդելու, հառաչանքների հողմից դուրս քշուեցայ քաղաքիդ դռներից եւ պաղատանք եմ անում, որ ներես հռոմին եւ աղերսարկու հայրենակիցներիդ։ Բարի աստուածները ամոքեն քո բարկութիւնը եւ նրա մրուրը շուռ տան այս սրիկայի գլխին, այս մարդու, որ մի պատի պէս ինձ արգիլում էր քեզ հասնելու։

CORIOLANUS.
Հեռացի՛ր։

MENENIUS.
Ինչպէ՞ս, հեռանա՞մ։

CORIOLANUS.
Կին, մայր, երեխայ ես չեմ ճանաչում։ Իմ արարքները ծառայացած են ուրիշ կամքերի. թէեւ ես ինքս եմ վրէժխս տէրը, բայց թողութիւնս կախուած է հիմա վոլսկեան կուրծքերից։ Որ մենք մտերիմ եղած ենք մի օր, պէտք է ապերախտ մոռացութիւնը ոտնակոխ անէ, ոչ թէ գթութիւնն ասէ, թէ որչափ։ Գնա՛ ուրեմն. իմ ականջները աղերսներիդ դէմ աւելի փակ են, քան ձեր դարպասներն՝ իմ ուժի հանդէպ։ Բայց, որովհետեւ քեզ սիրում էի, առ այս, տար քեզ հետ. քեզ համար եմ գրել եւ միտք ունէի քեզ ուղարկելու։ Տալիս է մի նամակ։ Մէկ բառ էլ, մենենիոս. չեմ ուզում խօսես։ Լսիր, աւֆիդիոս, այս մարդը հռոմում իմ սիրելին էր. եւ սակայն տեսար։

AUFIDIUS.
Ձեր միտքն անխախտ է։

[Coriolanus and Aufidius exit.]

GUARD I.
Եկ տեսնենք, պարոն, մենենիո՞ս է անունդ։

GUARD II.
Տեսա՞ր՝ ի՜նչ զօրեղ դիւթանք ունէր։ Հիմա տանդ ճանապարհը լաւ գիտես։

GUARD I.
Չե՞ս լսում՝ ինչպէս մեզ նախատում են, որ ձեր մեծութեան առաջը կտրեցինք։

GUARD II.
Ի՞նչ պատճառ ունիմ, քո կարծիքով, ուշաթափուելու։

MENENIUS.
Ո՛չ աշխարհն է հոգս, ո՛չ էլ՝ ձեր զօրավարը. ինչ վերաբերում է ձեզ պէս էակների, չեմ մտածում, որ դուք կաք թէ, չկաք, այնքա՜ն չնչին բաներ էք։ Ով ինքնին փափագ ունի մեռնելու, երկիւղ չունի ուրիշի ձեռքով մեռնելուց։ Թող ձեր զօրավարը անէ, ինչ որ կարող է։ Իսկ դուք եղէք, ինչ որ կաք երկար ժամանակ, եւ ձեր թշուառութիւնը աւելանայ ձեր տարիքի հետ։ Ես էլ ձեզ ասում եմ, ինչ որ ինձ ասացին՝ հեռացէ՛ք։

GUARD I.
Ի՜նչ վեհ հոգի է. հաւատացնում եմ։

GUARD II.
Ի՜նչ արժանաւոր մարդ է մեր զօրավարը. ժայռ է, կաղնի է, որ ոչ մի հողմից չի շարժուի։

[They all exit.]

][][

## ACT V. SCENE III.

Tent of Coriolanus. Coriolanus enters with Aufidius and Others.

## CORIOLANUS.

Վաղը մենք հռոմի պարսպի առաջ կը բանակեցնենք մեր բոլոր զօրքը։ Իմ պաշտօնակի՛ց այս պատերազմի, պէտք է զեկուցես վոլսկ աւագներին, ինչպէ՛ս աշկարայ տարել եմ գործը։

## AUFIDIUS.

Նրանց շահերն էք սոսկ աչքերի առել, ձեր ականջները խցել էք հռոմի աղաչանքի դէմ, երբեք առանձին ոչ մի փսփսուք դուք չէք թոյլատրել, ոչ իսկ այնպիսի բարեկամներից, որոնք ձեր վրայ վստահ են եղել։

## CORIOLANUS.

Վերջին ծերուկը, որին սրտաբեկ հռոմ ուղարկեցի սիրում էր ինձ խիստ, աւելի, քան հօր սիրելու չափը, նա ինձ իսկապէս աստուածացնում էր. նրանց գործ դրած վերջին միջոցը նրան ղրկելն էր. ի սէր նրա հին բարեկամութեան, մէկ անգամ եւս առաջարկեցի այն պայմանները, որ մերժել էին առաջին անգամ եւ որ չեն կարող հիմա ընդունել. ես այդ բանն արի ի պատիւ նրա, որ մտածում էր, թէ աւելի շատ ձեռք պիտի բերէ. ինչ որ զիջել եմ, շատ չնչին բան է. նոր դեսպանութիւն եւ նոր հայցանքներ՝ լինի պետական, լինի անձնական բարեկամներից, չպիտի լսեմ։

[Virgilia and Volumnia enter, leading Young Marcius and Valeria.]

## CORIOLANUS [cont.]

Ամէնից առաջ իմ կինն է գալիս. յետոյ՝ յարգելի այն կաղապարը, որի մէջ ձուլուեց այս զանգուածը, եւ նրա ձեռքին՝ իր տոհմի թոռնը։ Բայց կորչի՛ սէրը, խզուի ամէն կապ, ամէն իրաւունք ազգականութեան, յամառութիւնը թող վեհ համարուի։ Ի՞նչ արժէք ունի այն մեծարանքը, ինձ ի՞նչ տատրակի այն հեզ աչքերը, որոնք կարող են աստուածներին իսկ ուխտադրուժ անել։ Օ՛, ես հալւում եմ, ես աւելի կոշտ հողից չեմ շինուած, քան ուրիշները։ Այս ի՞նչ է, մայրս ինձ գլուխ է տալիս. օլիմպը

գլուխ տայ խլուրդի դիզած մի հողակոյտի եւ հայցուածք անէ՛. եւ փոքրիկ տղաս բարեխօսելու մի կեցուած ունի, որ մեծ բնութիւնը աղաղակում է։ *«Մի մերժիր դրան»։* Ո՛չ, թող վոլսկերը հերկեն հռոմը, ցաքեն իտալիան. ես անկարող եմ սագի ճուտի պէս հնազանդել միայն իմ բնազդներին. այլ պէտք է կանգնեմ, որպէս թէ մարդը ինքն է իր ծնողը եւ այլ ցեղ չունի։

VIRGILIA.
Տէ՛ր ամուսինս։

CORIOLANUS.
Այս աչքերը չե՛ն հռոմի աչքերս։

VIRGILIA.
Այն վիշտը, որ մեզ այսքան այլայլուած ներկայացնում է, նա՛ է պատճառը այդպէս կարծելուդ։

CORIOLANUS.
Եւ հիմա, ինչպէս ապուշ դերասան, դերս մոռցել եմ եւ թելս կորցրել՝ հասած կատարեալ խայտառակութեան։ Ով իմ կողակից, ներիր ինձ, ներիր դաժանութիւնս, սակայն դրա տեղ մի՛ ասա։ *«Ներիր մեր հռոմայեցոց»։* Օ՛ եկ, մի համբոյր, մի համբոյր երկար, ինչպէս աքսորս, քաղցր, ինչպէս վրէժս։ Արդ, թող երկնքի խանդոտ թագուհին ինձ վկայ լինի, վերջին համբոյրդ, որ տարի քեզնից, այն օրից ի վեր, ով իմ անուշիկ, իմ անկեղծ շուրթը կոյս պահել է այն։ Բայց բարբանջում եմ. երկի՛նք, աշխարհի ամէնէն ազնիւ մայրը թողել եմ առանց ողջոյնի։ Ծունկ, հողը մխուիր, քո խոր յարգանքը թող աւելի խոր փորուածք ցուցադրէ, քան սովորական որդիներինը։

VOLUMNIA.
Վեր կաց, օրհնուած. իսկ ես կը չոքեմ, առանց մի բարձի՝ կայծքարից փափուկ, քո առաջ, որդիս, եւ պարտք կը ծօնեմ, հակառակ կարգի, որ մինչեւ հիմա սխալ է եղած զաւակի միջեւ եւ իր ծնողի։

CORIOLANUS.
Ա՛հ, այս ինչ բան է. ի՞մ առաջ ծունկի, քո խելքի եկած զաւակի՞ առաջ։ Ո՛չ, թող խիճերը ամուլ ծովափի կոծեն աստղերը, եւ հեստ հողմերը զարկեն փառահեղ եղեւինները հրավառ արեւին, որ անկարելին բնաջինջ անեն եւ անլինելին խաղալիք շինեն։

VOLUMNIA.
Իմ ռազմիկն ես դու. ես սատարել եմ ձեւակերպումիդ։ ճանաչո՞ւմ ես սրան։

CORIOLANUS.
Պուբլիկոլայի խիստ ազնիւ քոյրը, հռոմի լուսինը, անապակ, ինչպէս սառնորակ ցօղը, որ մաքուր ձիւնից բիւրեղացած է սառնամանիքից, եւ դիանայի տաճարից կախուած։ Քաղցրիկ վալերիա։

VOLUMNIA.
Սա էլ քո խեղճուկ մանրապատկերն է, որ ժամանակի հասունացումով եւ մեկնութիւնով ամէն բանով քեզ պիտի նմանի։

CORIOLANUS.
Թող զինուորների աստուածը յաւէտ, մեծ իւպիտերի բարեհաճութեամբ տոգորէ հոգիդ ազնիւ մտքերով, որ անխոցելի դառնաս վատութեան եւ ռազմերի մէջ, ինչպէս կարկառուն մի ծովանշան, միշտ բարձր կանգնես ամէն հողմի դէմ եւ փրկես նրանց, որոնք քեզ հայեն։

VOLUMNIA.
Ծունկի եկ, մանչուկ։

CORIOLANUS.
Իմ քաջ տղաս է։

VOLUMNIA.

Նա էլ եւ կինդ, այս տիկինն ու ես, բոլորս առաջդ աղերսարկու ենք։

CORIOLANUS.

Խնդրում եմ, թող այդ. կամ, եթէ հայցես, ապա միտ բեր այս. ինչ որ երդուել եմ չզիջել, երբեք մերժում չկարծէք. մի՛ հայցէք ինձնից իմ զօրքն արձակել կամ կրկին հռոմի բանուորների հետ գլուխ գլխի տալ, մի՛ ասէք՝ ինչով ես անբնական երեւում եմ ձեզ եւ մի՛ պահանջէք ամոքել իմ վրէժն ու բարկութիւնը ձեր աւելի սառն պատճառանքներով։

VOLUMNIA.

Օ՛, բաւ է, բաւ է. արդէն ասացիր, որ մեզ ոչ մի բան չպիտի զիջես, քանզի մենք չունինք այլ բան հայցելու, եթէ ոչ, ինչ որ արդէն մերժում ես. բայց դեռ կը հայցենք, որ, եթէ մերժես, քո դաժանութեան յանցանքը լինի։ Լսիր ուրեմն։

CORIOLANUS.

Աւֆիդիոս, վոլսկեր, ուշադիր եղէք, քանզի մենք հռոմից ոչ մի գաղտնի բան չենք ուզում լսել։ Ձեր խնդրանքն ի՞նչ է։

VOLUMNIA.

Լուռ էլ մնայինք եւ չխօսէինք՝ մեր հանդերձները, մարմնի վիճակը պէտք է յայտնէին, թէ ինչ է եղել մեր վարած կեանքը աքսորեդ ի վեր։ Մտածիր, որքա՛ն աւելի անբախտ, քան թէ աշխարհի բոլոր կանայքը, եկել ենք այստեղ. քո տեսութիւնը, որ մեր աչքերը պիտի ողողէր ուրախութիւնով, որ մեր սրտերը կայթել պիտի տար անբաւ հրճուանքից, այժմ ստիպում է նրանց արտասուել, ցնցում է նրանց ահով եւ վշտով՝ հարկադրելով մայր, կին եւ երեխայ ականատեսել, թէ ինչպէս որդին եւ ամուսինը եւ հայրն իր ձեռքով պատռում է աղիքն իր հայրենիքի, եւ մեզ՝ խեղճերիս, թշնամութիւնդ խիստ մահացու է. դու թումբ ես դնում մեր աղօթքներին առ աստուածները, որ սփոփանք են ամէնքի համար, բացի մեզանից. ինչպէ՞ս ենք կարող, աւա՛ղ, աղօթել. ինչպէ՞ս աղօթել մեր երկրի համար, ինչ որ պարտք է մեզ եւ քո յաղթութեան միաժամանակ, ինչ որ պարտք է մեզ. կա՛մ պէտք

է զոհենք մեր հայրենիքը՝ քաղցրիկ ստնտուն, եւ կա՛մ քո անձը՝ մեր բերկրութիւնը հայրենիքի մէջ։ Ակնյայտ աղէտ սպասում է մեզ, թէեւ մեր իղձը կատարուած լինի, ո՛ր կողմն էլ յաղթէ. ինչու որ՝ կա՛մ քեզ՝ իբր օտարացած մի ուրացողի, ձեռքերը կապած՝ պէտք է ման ածեն մեր փողոցներում, կա՛մ դու յաղթական պէտք է ոտք կոխես քո հայրենիքի աւերակի վրայ, եւ դափնի կրես՝ քաջաբար կնոջդ ու զաւակներիդ արիւնը թափած լինելուդ համար։ Գալով ինձ, որդիս, չպիտի սպասեմ, մինչեւ որ բախտը վերջ տայ այս կռուին. թէ քեզ համոզել չկարողանամ, որ շնորհ ցոյց տաս երկու կողմերին, ոչ թէ մէկ կողմի ջնջումը փնտրես, ապա այն օրը, որ քայլես՝ երկիրդ ասպատակելու, պէտք է ոտք կոխես (այդ լաւ իմացիր) քեզ աշխարհ բերող արգանդի վրայ։

VIRGILIA.
Եւ ի՛մ արգանդի, որ այս զաւակը բերեց քեզ համար՝ անունդ անմահ պահելու համար ապագայի մէջ։

YOUNG MARCIUS.
Պէտք չէ կոխ տայ ինձ. ո՛չ, ես կը փախչիմ, մինչեւ մեծանամ, յետոյ կը կռուեմ։

CORIOLANUS.
Եթէ մարդ չուզէ փափկասիրտ լինել կնիկների պէս, պէտք է չտեսնէ ո՛չ երեխայի, ո՛չ կնոջ երես։ Երկա՛ր մնացի։

VOLUMNIA.
Ո՛չ, մի՛ հեռանայ մեզնից այդ կերպով։ Եթէ մեր խնդրանքը թելադրէր քեզ հռոմն ազատել եւ, հետեւաբար, զոհել վոլսկերին, որոնց շահերին ծառայում ես այժմ, դատապարտելի պիտի լինէինք իբրեւ թոյն պատուիդ. ո՛չ, մեր խնդրանքն է, որ հաշտեցնես երկու կողմերը, որ վոլսկերն ասեն։ *«Մենք գութ ցոյց տուինք»* եւ հռոմայեցիք՝։ *«Մենք գութ ստացանք»* եւ ամէն մի ոք երկու կողմերից քեզ փառաբանէ եւ աղաղակէ։ *«Օրհնեալ լինիս դու, որ առաջ բերիր այս հաշտութիւնը»*։ Գիտես, մե՛ծ որդի, պատերազմների ելքն անստոյգ է, բայց այս ստոյգ է, որ երբ հռոմն առնես, քաղելիք շահդ է այնպիսի անուն, որի կրկնումը կից պիտի լինի

անէծքների հետ, եւ պատմագիրը այս պիտի գրէ։ *«Մարդը ազնիւ էր, բայց վերջին գործովն ամէն բան ջնջեց, այո՛, կործանեց իր հայրենիքը, թող նրա անունն ապագայի մէջ զարշելի մնայ»։* Դու միշտ սիրել ես պատուի ամէնէն նուրբ դրդումները եւ աստուածների յատկութիւններից օրինակ առնել. որոտով պատռել լայն այտերն օդի, սակայն մի շանթով ծծումբ արձակել, որ պէտք է միայն մի կաղնի ճեղքէ։ Ինչո՞ւ չես խօսում. կարծում ես արդեօք, որ ազնիւ մարդուն պատի՞ւ է բերում յիշաչար լինել։ Դուստր իմ, դո՛ւ խօսիր. քո արտասուելը նրա հոգը չէ։ Դու խօսիր, մանչս. քո տղայութիւնն աւելի ազդել կարող է նրան, քան մեր փաստերը։ Չկայ աշխարհում մի մարդ, որ իր մօրն աւելի պարտ է. եւ սակայն նա ինձ թողնում է այստեղ, որ զուր բարբառեմ, երբեք կեանքիդ մէջ մի սիրելութիւն ցոյց տուած չկաս խանդակաթ մօրդ. այնինչ նա, խե՛ղճ հաւ, դժկամ նոր թուխսի, կտկտում էր քեզ դէպի պատերազմ, եւ դուն՝ ողջ-առողջ եւ պատիւներով ծանրաբեռնուած։ Աաա, թէ խնդրանքս անարդար բան է, եւ վռնդիր ինձ. սակայն եթէ չէ՛, պարկեշտ չես ապա, եւ աստուածները քեզ պիտի պատժեն, որ մերժում ես ինձ մի մօր պատկանող յարգն ու պատիւը։ ծունկի, տիկիննե՛ր, ծնկերս նրան թող ամօթ բերեն. գոռոզութիւնը նրա մականուն կորիոլանին աւելի պատշաճ է, քան գթութիւնը մեր աղերսներին։ Ծունկի՛, եւ վերջ տանք. եւ այս վերջինն է։ Այսպէս գնանք տուն եւ այնտեղ մեռնենք դրկիցների հետ։ Նայիր. այս տղան, որ դեռ չգիտէ, թէ ինչ է խնդրում, որ ծունկի ընկած՝ ձեռք է բարձրացնում իբրեւ մեզ ընկեր, աւելի ուժով ջատագովում է մեր աղաչանքը, քան դու՝ մերժելով։ Եկէք, եւ գնանք. այս մարդու մայրը մի վոլսկուհի է, կինը կորիոլ է, եւ պատահմամբ է, որ այս զաւակը նման է նրան։ Դե՛հ, արձակիր մեզ, ես լուռ կը մնամ, մինչեւ մեր քաղաքն սկսի վառուիլ, եւ այն ժամանակ կը խօսեմ մի քիչ։

CORIOLANUS.

Ա՛խ, մայր իմ, մայր իմ. ի՞նչ արիր։ Նայիր. երկինքն է բացւում, եւ աստուածները նայում են ներքեւ եւ ծիծաղում են այս անբնական տեսարանի վրայ։ Օ՛, մայր իմ, մայր իմ, դու հռոմի համար սաստիկ բարեբաստ յաղթանակ տարիր. բայց որդուդ համար, Օ՛, հաւատա ինձ, հաւատա, մայր իմ, խիստ վտանգաւոր յաղթանակ է այդ քո որդու վրայ, նոյնիսկ մահացու՝ քո որդու համար։ Ինչ կ՝ուզէ, լինի։ Աւֆիդիոս, թէեւ չեմ կարող իրաւ պատերազմ անել, բայց լաւ հաշտութիւն կարող եմ կնքել։

Բարի աւֆիդիոս, ասա, եթէ դու իմ տեղ լինէիր, քո մօրը պակա՞ս պիտի լսէիր, պակա՞ս զիջէիր։

AUFIDIUS.
Ես էլ դրանից զգացուած էի։

CORIOLANUS.
Կ՝երդուեմ, որ էիր։ Քիչ բան չէ, տէր իմ, ստիպել աչքերս գթութիւն թորել։ Բայց, բարի տէր իմ, ինչ խաղաղութիւն, որ քեզ հաճոյ է, առաջադրիր ինձ։ Գալով իմ անձիս՝ ես հռոմ չեմ երթայ, այլ յետ կը դառնամ քեզ հետ միասին. եւ այս դատի մէջ խնդրեմ օգնես ինձ։ Օ՛, մա՜յր, կի՜ն։

AUFIDIUS.
[Aside.] Իսկ ես ուրախ եմ, որ դու պատիւդ եւ գթութիւնդ իրարու ներհակ դասել ես քո մէջ. եւ պիտի ջանամ ծառայեցնել այդ՝ հասնելու համար իմ նախկին բախտին։ Տիկինները նշաններ են անում կորիոլանին։

CORIOLANUS.
Դեռ ոչ. պէտք է նախ միասին խմենք, եւ աւելի լաւ գրաւական տամ ձեզ ձեր հետ տանելու, քան թէ սոսկ բառեր. ինչ որ, մեր կողմից, համահաւասար պայմանադրութեամբ, ուզում ենք կնքել։ Ներս եկէք մեզ հետ։ Տիկնայք, արժան էք, որ ձեզ ի պատիւ մի տաճար կանգնեն ողջ իտալիայի բոլոր սրերը, եւ իր դաշնակից բոլոր զէնքերը չէին կարենայ կնքել այսպիսի մի խաղաղութիւն։

[They all exit.]

][][

## ACT V. SCENE IV.

Rome. Public Place. Menenius and Sicinius enter.

MENENIUS.

Տեսնո՞ւմ ես այնտեղ այն կապիտոլի անկիւնաքարը։

SICINIUS.

Լաւ, ի՞նչ է միտքդ։

MENENIUS.

Եթէ կարելի բան է, որ դու փոքրիկ ճկոյթովդ այն քարը տեղից խախտես, ապա յոյս կայ, որ հռոմի տիկինները, յատկապէս իր մայրը, կարողանան ազդել նրա վրայ։ Բայց քեզ ասում եմ, որ ոչ մի յոյս չկայ, մեր կոկորդները դատապարտուած են եւ սպասում են կտրուելու։

SICINIUS.

Կարելի բա՞ն է, որ այսքան կարճ ժամանակի մէջ մի մարդ այնքան այլափոխուի։

MENENIUS.

Մի թրթուրի եւ մի թիթեռի մէջ մեծ տարբերութիւն կայ, եւ սակայն թիթեռ ասածդ մի թրթուր էր։ Այս մարցիոսը մարդուց փոխուել է մի վիշապի. թեւեր ունի, մի պարզ սողուն չէ։

SICINIUS.

Իր մօրը սաստիկ սիրում էր։

MENENIUS.

Ինձ էլ նոյնպէս եւ մօրը աւելի չէ մտաբերում, քան թէ ութը տարեկան մի ձի՝ իր մօրը։ Նրա դէմքի թթուութիւնը հասած խաղողները կարող է թթուեցնել. երբ որ քայլում է, բաբանի նման ոտք է տրոփում, եւ գետինը նրա ոտքի առաջ կուզ է գալիս. կարող է աչքովը մի զրահ թափանցել. ձայնը մահազանգ է, եւ։ «հըմը»՝

թնդանօթ։ Բազմում է մի աթոռի վրայ, որ կարծես ալեքսանդրի համար շինած լինեն։ Հրամանը բերանից չելած՝ արդէն կատարուած է։ Ոչինչ պակաս չէ նրան՝ մի աստուած լինելու համար, եթէ ոչ՝ յաւէրժութիւն եւ մի երկինք՝ իբրեւ գահոյք։

SICINIUS.
Եւ գթութիւն, եթէ ճիշտ է քո զեկուցումը։

MENENIUS.
Ես նկարում եմ նրա պատկերը։ Տեսնենք՝ մայրը ի՛նչ գթութիւն պիտի բերէ նրանից. նրա մէջ աւելի գութ չկայ, քան թէ կաթ՝ մի որձ վագրի մէջ. մեր խեղճ քաղաքը կը տեսնէ շուտով, եւ այս բոլորը ձեր շնորհիւ է։

SICINIUS.
Աստուածները բարի լինեն մեզ։

MENENIUS.
Ո՛չ, այսպիսի դէպքում բարի չեն լինի մեզ։ Երբ մենք նրան աքսորեցինք, չյարգեցինք աստուածներին, եւ հիմա, որ նա վերադարձել է մեր վիզը կոտրելու, նրանք մեզ չեն խնայի։

MESSENGER.
[Entering.] Եթէ ուզում էք ձեր կեանքը փրկել, տուն փախէք, տէր իմ։ Պլեբէյեանները ձեր պաշտօնակցին բռնել են այնտեղ եւ քաշկռտում են՝ երդում անելով, որ եթէ հռոմի այն տիկինները լաւ լուր չբերեն, նրան մատ առ մատ մահացնելու են։ Գալիս է մի ուրիշ լրաբեր։

SICINIUS.
Ի՞նչ լուր։

MESSENGER.
Բարի՛ լուր, բարի՛ լուր։ Տէր իմ, տիկիններն առաջ են տարել. վոլսկերը արդէն

տեղափոխուել են, մարցիոսն էլ գնաց։ Երբեք աւելի ուրախալի օր հռոմը չէ տեսել, ոչ իսկ տարկուինի արտաքսման առթիւ։

SICINIUS.
Աստ, բարեկամ, վստա՞հ ես արդեօք, որ լուրը ճիշտ է։

MESSENGER.
Բոլորովին ճիշտ։ ճիշտ, ինչպէս գիտեմ՝ արեւը բոց է։ Ո՞ւր էիր դարանուած, որ լուրի մասին կասկած ես յայտնում. ոչ մի կամուրջի կամարի միջից քշուած հոսանքը չէ այնպէս խուժել, ինչպէս վերստին սփոփուածները հռոմի դռներից։ Չե՞ս լսում միթէ։ Փողեր, սրինգներ, թմբուկի աղմուկ, բոլորը միասին։ Փողեր, շեփորներ, կիթառներ, վիներ եւ դայիրաներ եւ ծնծղաներ եւ հռոմայեցիք գոռում-գոչումով պարել են տալիս արեւին։ Լսէ՛ք։

MENENIUS.
Լաւ լուր է. երթամ հանդիպեմ մեր տիկիններին։ Այս վոլումնիան աւելի արժէ, քան թէ կոնսուլներ եւ սենատորներ եւ պատրիկեաններ, մի ամբողջ քաղաք ձեզ պէս տրիբուններ, մի ծով ու ցամաք ձեզ նմանների։ Երեւի այսօր լաւ էք աղօթել. այս առաւօտուն ձեր կոկորդներից տասը հազարին մէ՛կ դանգ չէի տայ։ Լսեցի՞ք, ինչպէս ուրախանում են։

SICINIUS.
Նախ՝ օրհնեալ լինես լաւ լուրիդ համար. երկրորդ՝ ընդունիր շնորհակալիքս։

MESSENGER.
Տէր իմ, ամէնքս շատ տեղիք ունինք շնորհակալութեան։

SICINIUS.
Մօ՞տ են քաղաքին։

MESSENGER.
Ճիշտ ներս են մտնում։

SICINIUS.
Գնանք ընդառաջ՝ եւ մենք էլ օգնենք ուրախանալու։

[They exit.]

SICINIUS [cont.]
Գալիս են տիկինները՝ երկու սենատորների հետ, եւ անցնում են բեմից ուրիշ ազնուականների եւ ժողովուրդի հետ։

SENATOR I.
Նայեցէք, ահա մեր պաշտպանուհին, մեր հռոմի կեանքը։ Կանչեցէք այստեղ բոլոր ցեղերը, գովաբանեցէք մեծ աստուածներին եւ յաղթանակի կրակներ վառէք, ծաղիկներ սփռէք նրանց ոտքերին, կեցցէ գոչեցէք աւելի բարձր, քան այն աղմուկը, որ մարցիոսին աքսոր ուղարկեց. եւ նրա մօրը ողջոյն ասելով՝ յետ բերէք նրան. աղաղակեցէք։ *«Ողջոյն, տիկիններ, բարի գալուստ ձեզ»։*

EVERYONE.
Ողջոյն, տիկիններ, բարի՜ գալուստ ձեզ։ Թմբուկների եւ փողերի ձայն։

[They exit.]

][][

ACT V. SCENE V.
Rome. Street near the Gate. Aufidius enters.

AUFIDIUS.
Գնա, քաղաքի մեծերին յայտնիր, որ ես այստեղ եմ, եւ տուր այս թուղթը. կարդալուց յետոյ ասա, թող իսկոյն գան հրապարակը, ուր ես թե՝ նրանց եւ թե՝ համայնքի ներկայութեանը պիտի հաստատեմ իմ գրածների ճշմարտութիւնը։ Այն մարդը, որին ամբաստանում եմ, հիմա մուտք գործեց քաղաքի դռնից, միտք ունի դուրս գալ համայնքի առաջ եւ անմեղացնել իր արածները բառերով։

[Conspirators enter.]

CONSPIRATOR I.
Ինչպէ՞ս է մեր զօրավարը։

AUFIDIUS.
Մի մարդու նման, որ իր սեփական ողորմածութեամբ թունաւորուած է, բարերարութեամբն իր սպանուած։

CONSPIRATORS II.
Եթէ, ազնիւ տէր, դեռեւս անխախտ էք ձեր այն մտքի մէջ, որ ուզում էինք մենք գործադրէինք, լաւ, կ՝ազատենք ձեզ ձեր մեծ վտանգից։

AUFIDIUS.
Չեմ կարող ասել. մենք պէտք է գործենք՝ նայած ամբոխի վերաբերմունքին։

CONSPIRATORS III.
Ամբոխի դիրքը անյայտ կը մնայ, քանի որ ձեր մէջ հակառակում կայ, սակայն երկուսից մէկի անկումը միւսին կը դարձնէ ժառանգ բոլորին։

AUFIDIUS.

Գիտեմ, այդպէս է. նրան զարկելու իմ պատրուակը արդարացնելու լաւ հիմքեր ունիմ. ես ինքս նրան այնքան բարձրացրի, պատիւս նրա հաւատարմութեան երաշխիք տուի. նա բարձրանալով շողոքորթութեան ցօղերով ջրեց իր նոր տունկերը՝ բարեկամներիս իր կողմ քաշելով, եւ այս դիտումով նա ճկուն արաւ իր բնութիւնը՝ ծանօթ, մինչեւ այն, որպէս բիրտ, ազատ եւ անսանձելի։

CONSPIRATORS III.

Բայց, տէր իմ, նրա յամառութիւնը, երբ թեկնածու էր հիւպատոսութեան, գլուխ ծռելու իր դժկամութեամբ։ Որ ձեռքից տուաւ։

AUFIDIUS.

Այդ էի ասում, եւ այդ պատճառով աքսորուելուց յետ եկաւ իմ տունը եւ իր կոկորդը պարզեց դաշոյնիս. ես նրան առի եւ պաշտօնակից շինեցի ինձ հետ, ամէն բանի մէջ զիջեցի նրան, նոյնիսկ թոյլ տուի իր խորհուրդների կատարման համար ջոկէ իմ զօրքից ամենակտրիճ եւ կայտառ մարդկանց, եւ ծառայեցրի սեփական անձս էլ նրա խոհերին, օգնեցի, որ նա հնձէ համբաւը, որ բոլորովին իրեն յատկացրեց. մի տեսակ փառք էր իր համար զգում, որ զրկում է ինձ. մինչեւ, ի վերջոյ, մի սպասաւոր երեւում էի, ոչ պաշտօնակից. նա ինձ առնում էր իր հովանու տակ, որպէս թէ վարձկան զինուոր լինէի։

CONSPIRATORS I.

Այդպէս է, տէր իմ, եւ զօրքն այդ բանից ապշած էր սաստիկ, եւ երբ, ի վերջոյ, նա առաւ հռոմը, մենք մեծ աւարի, որչափ մեծ փառքի յոյս էինք տածում։

AUFIDIUS.

Այդ է բուն կէտը, դրա համար է, որ պէտք է ջիլերս ձգտեմ նրա վրայ. նա, ի փոխարէն մի քանի կաթիլ կնոջ արցունքի, որոնք դիւրին են, որքան սուտ խօսքեր, ծախեց մեր թափած բոլոր արիւնը եւ աշխատանքը մեր մեծ կռուի մէջ։ Դրա համար է, որ պէտք է մեռնի, եւ ես նորոգուիմ նրա անկումով։

[Distant War drums.]

AUFIDIUS [cont.]
Ժողովրդի կողմից կեցցէների մեծ աղմուկ։

CONSPIRATORS I.
Դուք մուտք գործեցիք ձեր մայր քաղաքը, ինչպէս լրաբեր, առանց որեւէ բարի գալուստի. իսկ նա դառնում է՝ օդը պատռելով գոռում-գոչումով։

CONSPIRATORS II.
Եւ համբերատար յիմարներ, որոնց երեխաներին նա սպանել է, պատռում են իրենց նուաստ կոկորդը՝ կեցցէ կանչելով։

CONSPIRATORS III.
Դուք էլ, ուրեմն, ձեր պատեհ ժամին, նախքան նա խօսէ եւ ոգեւորէ մեր ժողովուրդին, ձգացրէք նրան ձեր սուրի ծայրը, եւ մենք էլ կ՝օգնենք։ Երբ գետին փռուի, եւ դուք ձեր ձեւով խօսէք ձեր ճառը, ապա կը թաղէք նրա փաստերը նրա մարմնի հետ։

AUFIDIUS.
Բաւ է, մի՛ խօսէք. ահա գալիս են մեր իշխանները։

[Lords of the City enter.]

LORD I.
Բարի վերադարձ ձեր քաղաքի մէջ։

AUFIDIUS.
Ես արժանի չեմ։ Բայց ասացէք ինձ, յարգի իշխաններ, արդեօք կարդացի՞ք լաւ ուշադրութեամբ ձեզ գրածներս։

EVERYONE.
Այո՛, կարդացինք։

LORD I.
Եւ շատ ցաւեցինք. ինչ յանցանքներ էլ որ գործած լինի վերջինից առաջ, թեթեւ տուժանքի արժան կը լինէր. սակայն աւարտել, ուր պիտի սկսէր, ձեռքից բաց թողնել մեր զօրակոչի բոլոր արդիւնքը, մեր վրայ բարդել մեր արած ծախքը եւ դաշինք կապել, ուր պարտութիւն կայ, սա չքմեղանքի ոչ մի տեղ չունի։

AUFIDIUS.
Ահա գալիս է. հիմա կը լսէք։

[Coriolanus enters surrounded by Citizens.]

CORIOLANUS.
Ողջոյն, իշխաններ. վերադարձել եմ միշտ ձեր զինուորը նոյնչափ անվարակ իմ երկրի սիրուց, որչափ այստեղից մեկնելուս օրը, բայց միշտ հնազանդ ձեր մեծ հրամանին։ Պէտք է իմանաք, որ յաջողութեամբ փորձեցի տանել եւ արիւնահեղ ճամփայ բանալով՝ տարի ձեր զօրքը, մինչեւ հասցրի հռոմի դռները։ Այն աւարները, որ տուն ենք բերել, աւելի, քան թէ գերակշիռ են մի երրորդ մասով այս պատերազմի բոլոր ծախքերից։ Մենք խաղաղութեան դաշինք ենք կապել նոյնքան ի պատիւ անտիատների, որքան որ յամօթ հռոմայեցիների. ահա յանձնում ենք, ստորագրուած պատրիկեաններից եւ կոնսուլներից, նոյնպէս եւ կնքուած հռոմի սենատից, այն, որի մասին համաձայնուել ենք։

AUFIDIUS.
Մի՛ կարդաք թուղթը, ազնիւ իշխաններ, ասացէք դրան՝ վերին աստիճան այդ դաւաճանին, որ նա զեղծել է ձեր՝ իրեն տուած լիազօրումը։

CORIOLANUS.
Դաւաճա՞ն. ինչպէ՞ս։

AUFIDIUS.
Դաւաճա՛ն, մարցիոս։

CORIOLANUS.
Մարցիո՞ս։

AUFIDIUS.
Հապա ի՞նչ. դու, կայիոս մարցիոս. միթէ՞ կարծում ես՝ քեզ պիտի պատուեմ այն գողութիւնով, գողցած անունով, կորիոլանով կորիոլի մէջ։ Ո՛վ դուք իշխաններ, պետութեան գլուխներ, նա ձեր շահերը նենգօրէն դաւեց եւ ընծայ արաւ փոխարէն աղի քիչ կաթիլների, ձեր հռոմ քաղաքը, այո՛, ձեր հռոմը՝ կնոջն ու մօրը, պատռելով իր ուխտն ու որոշումը՝ որպէս մի փտած մետաքսէ կերպաս, չյօժարուելով պատերազմական ոչ մի ժողովի. այլ իր դայակի արցունքի համար լաց ու գոռոցով նա տանել տուաւ ձեր յաղթութիւնը, այնպէս որ նոյնիսկ մանկլաւիկները կարմրում էին, եւ սրտոտ մարդիկ, զարմանքից ապշած, իրարու նայում։

CORIOLANUS.
Լսո՞ւմ ես, ո՛վ մարս։

AUFIDIUS.
Ո՛չ, այդ աստծու անունը մի՛ տա, արցունքի մանչուկ։

CORIOLANUS.
Հա՛։

AUFIDIUS.
Ոչ աւելի։

CORIOLANUS.
Անհո՛ւն ստախօս, սիրտս ուռեցրիր աւելի, քան թէ իր պարունակը։ Մանչո՞ւկ, ստրո՛ւկ դու։ Ներեցէք ինձ, տիարք. առջի անգամն է, որ հայհոյելու հարկադրուած եմ։ Ձեր վճիռները, պատկառելի տիարք, պէտք է սուտ հանեն այս անարգ շանը եւ իր սեփական գիտակցութիւնը, որ հարուածներիս հետքը կրում է իր մարմնի վրայ, եւ պէտք է իր հետ գերեզման տանէ, պէտք է միանայ ապացուցելու, որ սուտ է խօսում։

LORD I.
Հանդա՛րտ, երկուսդ էլ, եւ թողէք խօսեմ։

CORIOLANUS.
Յօշոտեցէք ինձ, վոլսկեր. մարդիկ ու մանչեր թթացնեն վրաս իրենց սրերը։ «Մանչ, ստախօս շուն»։ Թէ ճիշտ էք գրել ձեր պատմութիւնը, այնտեղ գրուած է, որ մի արծուի պէս աղաւնանոցում ես ձեր վոլսկերին սոսկահար արի կորիոլիի մէջ։ Մենակ ինքս արի։ Տղա՛յ։

AUFIDIUS.
Բայց ինչո՞ւ, ազնիւ իշխաններ, այս ամբարիշտը եւ մեծախօսը ձեզ ուշաբերէ իր այն կոյր բախտը, որ ձեր ամօթն էր, ձեր ականջների, աչքերի առաջ։

ALL THE CONSPIRATORSS.
Հէնց դրա համար թող մեռնի։

THE MASSES.
Այո՛, յօշոտէք դրան, իսկոյն սպանէք. որդուս սպանեց։ Աղջկաս սպանեց։ Իմ ազգականին՝ մարկոսին սպանեց։ Իմ հօրն սպանեց։

LORD II.
Լռեցէք, էհէ՛յ։ Ոչ մի բրտութիւն. լռեցէք, մարդիկ։ Այս մարդն ազնիւ է, եւ տարածուած է նրա համբաւը այս աշխարհի շուրջ։ Վերջին յանցանքը մեր

պետութեան դէմ պէտք է նկատուի դատարանի մէջ։ Կանգ առ, աւֆիդիոս. եւ մի՛ խանգարիր խաղաղութիւնը։

CORIOLANUS.
Օ՛, երանի թէ ձեռքիս մէջ լինէր եւ վեց աւֆիդիոս եւ դեռ աւելի, իր ամբողջ ցեղը՝ փորձելու համար անխարդախ սուրս։

AUFIDIUS.
Անզգա՛մ սրիկայ։

ALL THE CONSPIRATORSS.
Սպանէ՛ք, սպանէ՛ք, սպանէ՛ք, սպանէ՛ք։

[Aufidius and the Conspirators draw their swords and kill Coriolanus,who falls. Aufidius stands on his dead body.]

ALL THE LORDS.
Կեցէ՛ք, կեցէ՛ք, կեցէ՛ք, կեցէ՛ք։

AUFIDIUS.
Ազնիւ մեծերս, թոյլ տուէք՝ խօսեմ։

LORD I.
Օ՛ տուլլո՛ս։

LORD II.
Մի գործ արիր դու, որ արութիւնը պիտի լայ վրան։

LORD III.
Կոխ մի տաք դրան, քաղաքացիներ, եւ հանդարտ կացէք եւ ձեր սրերը պատեանը դրէք։

## AUFIDIUS.

Իմ ազնիւ մեծեր, երբ որ իմանաք, ինչ որ չէք կարող այն բարկութեան մէջ, որ նա գրգռեց, թէ ի՜նչ մեծ վտանգ այս մարդու կեանքը լինելու էր ձեզ, ապա կը հրճուէք, որ նա այս կերպով ջնջուեց աշխարհից։ Բարեհաճեցէք ինձ ատեան կանչել ձեր սենատի մէջ, եւ ես ցոյց կը տամ, որ ձեր անձնուէր, անկեղծ ծառան եմ, այլապէս արժան՝ ձեր ամենածանր յանդիմանութեան։

## LORD I.

Դուրս տար այստեղից նրա մարմինը եւ սգա՛ վրան. թող նա նկատուի ամէնէն ազնիւ եւ վեհ դիակը, որին մունետիկ հետեւած լինի դէպի սափորը։

## LORD II.

Նա իր բարկութեամբ յետ է վերցնում աւֆիդիոսից մեղքի մեծ մասը։ Թող եղածի մէջ լաւ կողմը տեսնենք։

## AUFIDIUS.

Բարկութիւնս անցաւ. եւ վշտահար եմ։ Վեր առէք սրան. դուք, զինուորների գլխաւորներդ, եկէք օգնելու. եւ ես էլ՝ ձեզ հետ. թմբուկ զարկեցէք՝ ի նշան սուգի, պողպատ նիզակներդ իջեցրէք գետին։ Թէեւ շատ կանայք այս քաղաքի մէջ այրիացրել է, եւ շատ զաւակներ անհայր է թողել, որոնք ողբում են իրենց կորուստը մինչեւ այս ժամս, բայց այնուհանդերձ թող յարգանք ձօնենք իր յիշատակին։

[FIN]

**TRANSLATION BY LILIT "BABA" YAGIAN (1978)**






[8 of Wands] After the horrible nightmare that was [7] we find ourselves free but drifting. Afloat but directionless. True, we did not drown but being lost at night on a wine-dark sea brings its own set of issues. Unlike the [6 of Wands] "*I have heard the mermaids singing, each to each,*" here the Sirens are silent. Their songs and lights will neither guide nor confuse. They are simply waiting to see if any of us shall survive the night.